## « ՅԱՌԱՋ » ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Պ. Ռուբէն Բէչիչեան վեց ամսուան «Յառաջ» կը նուիրէ Պ. Նաղաշեանի (Արժանթէօյ) :

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Ալֆորվիլէն խումբ մը Կապոյտ Խաչու-հիներ Ս. Խաչի տօնին առթիւ ուխտա-գնացութիւն մը կազմակերպած էին Սէնթ-Թիլի Հրեշտակաց Մայր Աստուածածնայ մատուռին : Ձեռնարկին զուտ հասոյթը 53 Ն. Ֆ. կը նուիրեն Ս. Թէհլիրեան սը-րահին, ձեռամբ Տիկին Վ. Յ.ի : (Ստա-նալ «Յառաջ»էն) :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապ. Խաչի Շաւիլի մասնաճիւղը շը-նորհակալութեամբ ստացած է քսան Ն. Ֆ. Պ. Սարգիսեանէ, Յովսէփ Հայրօյ-եանի (Սէնթ Ուէն) մահուան առթիւ :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէսինի Կրօն. Ընկերակցութիւնը կը ծանուցանէ թէ, այսկիրակի առաւօտ ժա-մը 8.30ին, պատարագ պիտի մատուցուի տեղւոյս Ս. Աստուածածնայ Եկեղեցւոյ մէջ : Կը պատարագէ Տէր Վարագ Քհնյ. Աւագեան : Հոգեհանգստեան պաշտօն պի-տի կատարուի հանգուցեալ ՄԱՐՏԻՐՈՍ ՄԿՐՏԻՉԵԱՆԻ մահուան քառասունքին առթիւ :

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

Արհեստաւորներ (արթիզան), որոնք հաշուեցոյցով ծախելու իրաւունք ունե-նան, անոնցմէ ապրանք գնելու համար : Կանանց շատ լաւ քոնֆէքսիոն, որակը պէտք է համապատասխանէ «3 իրոնտելի» : Անմիջապէս ներկայանալ քօլեքսիոնով :

MAISON MARIE-CLAUDE
18, RUE SAULNIER, PARIS

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70-ԱՄԵԱԿԸ

## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ ՀՈԿՏ. 8-ԻՆ

### ՇԱԲԱԹ ԳԻՇԵՐ ՄԻՆՉԵՒ ԼՈՅՍ

5ՐԴ ԹԱՂԱՄԱՍԻ ՔԱՂԱՔԱՊԵՏԱՐԱՆԻ ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

**Place du Panthéon, Métros : St.-Michel et Gare du Luxembourg**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻՆ ԸՆԿԵՐՆԵՐ ՅՈՎԻԿ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ ԵՒ Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԿԵԴՐ. ՎԱՐՉ. ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉԸ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺՆԻՆ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ

Երգ՝ Օր. ՍՄՍԱՐԵԱՆ : դաշնակ՝ Օր. ՖԱՐՇԵԱՆ, արտասանութիւն՝ Օր. ԳԱԲՈՅԵԱՆ եւ Ընկ. ՀԱՊԷՇԵԱՆ, պար՝ Օր. ԹԱՐՕՆ, աքորտէօն՝ ԹՈՐՈՍ ՕՍՄԱՆՃԵԱՆ և պար՝ՍԹԷՖԱՆ ՎԱՍԷՕՐ, Թառի վրայ կը նուագէ ԳԱՐԵԳԻՆ, խօսնակ՝ Ընկ. Ե. ԳՐԻԳՈՐԵԱՆ

Կէս գիշերին կը սկսին եւրոպական պարերը :

ORCHESTRE ROBERTO SETO ET SES RUMBEROS

Ճոխ եւ առատ պիւֆէ դիւրամատչելի գիներով

ՄՈՒՏՔ՝ 4 Ն. Ֆ.

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՄԱՐՍԷՅԼ.— Այրի Տիկին Սիրանոյշ Ծերիկեանց, զաւակները Պանդուխտ, Պերճ, Պօղոս եւ ընտանեկան բոլոր պա-րագաները կը փութան իրենց խորին շը-նորհակալութիւնները յայտնել՝ Յառաջի վարչութեան եւ ամնէ անոնց որոնք ան-ձամբ, գրաւոր, ծաղկեպսակով եւ բա-րենպատակ նուիրատուութիւններով հա-ճեցան ցաւակից ըլլալ, իրենց սիրելի ա-մուսնոյն, հօր եւ ազգականին

ԳԵՂԱՄ ԾԵՐԻԿԵԱՆՑԻ

կսկծալի մահուան եւ յուղարկաւորու-թեան առթիւ :

Այս տխուր առթիւ Տիկին Ծերիկեանց եւ զաւակները 15ական Ն. Ֆ. կը նուիրեն «Յառաջ»ի բարգաւաճման եւ Մշակու-թային Տան Ս. Թէհլիրեան եւ Շ. Մի-սաքեան սրահներուն :

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Շաբաթ, Հոկտ. 8, ժամը 21էն մինչեւ առաւօտ

ՊԱՏՈՒՈՅ ՆԱԽԱԳԱՀ

**Gaston Defferre**

Sénateur-Maire de Marseille

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿԵՐ ՅԱԿՈԲ ՊԱՊԻԿԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿԵՐ ԺԻՐԱՅՐ ԴԱՏԱՒՈՐԵԱՆ

Գեղարուեստական ընտիր բաժին :

Երգ. Օր. ՇԱՔԷ ՊԷՆԿԵԱՆ (Փարիզէն) (Փարիզէն)

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆր. ԿԱՊ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Շաբաթ ժամը 4ին, Մշակոյթի Տան մէջ (17 Րիւ Պլէօ) : Օրա-կարգ՝ Ա) Դպրոցական հարց : Բ) Տիկին Էլլէն Բիւզանդի ի պատիւ ցերեկոյթ մը : Գ) Վարչութեան հրաժարական եւ նոր ընտրութիւն : Դ) Ընթացիկ հարցեր : Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :

ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԵԱՆ Որբախնամ Մարմնի վարչութեան ընտրութիւնը այս Երկուշաբթի, իր կեդրոնատեղին, եկե-ղեցւոյ սրահը :

Կը խնդրուի բոլոր անդամակցողներէն ներկայ գտնուիլ :

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ալբեւր - Սեւրը Եօթնեղբայրեան խումբի ընկերական ընդ. ժողովը այս Շաբաթ, ժամը 20.30-ին, սովորական հաւաքատեղին : Ըն-կերներու ներկայութիւնը պարտաւորիչ է :

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ.— «Դաշնակցութեան Օր»ը տեղի պիտի ունենայ Նոյեմբեր 5ի Շաբաթ երե-կոյեան Րիւ Տիւնուառի սրահին մէջ :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէսինի Կրօն. Ընկերակցութեան վար-չական անդամները Գուրգէն Տապաղեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի կը նուիրեն յիսուն Ն. Ֆ. Կապ. Խաչի Տէ-սինի Ազգ. վարժարանին, վաթսուն Ն. Ֆ. Աղքատախնամին, նոյնպէս եկեղեցիին Մարսէյլէն Լեւոն Քայթանճեան 50 Ն. Ֆ., Վալանսէն Պ. Արսէն Սարգիսեան 20 Ն. Ֆ., Լիոնէն Պ. Ճ. Պահատուրեան 50 Ն. Ֆ. (Աղքատախնամին):

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ.— «Դաշնակցութեան Օր»ը տեղի պիտի ունենայ Նոյեմբեր 5ի Շաբաթ իրի-կունը Րիւ Տինուառի սրահին մէջ:

Հանդիսաւոր տօնակատարութիւն Սար-պոնի մէջ, 9 Հոկտեմբեր1960, բոլոր դպ-րոցներու մասնակցութեամբ:

## 30-ՐԴ ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹԸ

### ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻ

Կիրակի, Մարտ 12, կէսօրէ վերջ ժա-մը 2·30ին, Սալ տը լա Շիմի, 28պիս, Րիւ Սէն Տօմինիք:

Կը խնդրուի նկատի առնել այս թուա-կանը:

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70-ԱՄԵԱԿԸ

## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ ՀՈԿՏ. 8-ԻՆ

### ՇԱԲԱԹ ԳԻՇԵՐ ՄԻՆՉԵՒ ԼՈՅՍ

5ՐԴ. ԹԱՂԱՄԱՍԻ ՔԱՂԱՔԱՊԵՏԱՐԱՆԻ ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

**Place du Panthéon, Métros : St.-Michel et Gare du Luxembourg**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿԵՐ ՅՈՎԻԿ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

ԽՕՍՔ Կ'ԱՌՆԷ Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉԸ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺՆԻՆ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ

Երգ՝ Օր. ՍՄՍԱՐԵԱՆ: դաշնակ՝ Օր. ՖԱՐՇԵԱՆ, արտասանութիւն՝ Օր. ԳԱԲՈՅԵԱՆ եւ Ընկ. ՀԱՊԷՇԵԱՆ, պար՝ Օր. ԹԱՐՕՆ, ջութակ՝ ԹՈՐՈՍ ՕՍՄԱՆՃԵԱՆ և պար՝ ՍԹԷՖԱՆ ՎԱՍԷՕՐ, Թառի վրայ կը նուագէ ԳԱՐԵԳԻՆ
Խօսնակ՝ Ընկ. Ե. ԳՐԻԳՈՐԵԱՆ

Կէս գիշերին կը սկսին եւրոպական պարերը:

ORCHESTRE ROBERTO SETO ET SES RUMBEROS

Ճոխ եւ առատ պիւֆէ դիւրամատչելի գիներով

ՄՈՒՏՔ՝ 4 Ն. Ֆ.

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Շաբաթ, Հոկտ. 8, ժամը 21էն մինչեւ առաւօտ

ՊԱՏՈՒՈՅ ՆԱԽԱԳԱՀ

**Gaston Defferre**

Sénateur-Maire de Marseille

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿԵՐ ՅԱԿՈԲ ՊԱՊԻԿԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿԵՐ ԺԻՐԱՅՐ ԴԱՏԱՒՈՐԵԱՆ

Գեղարուեստական ընտիր բաժին: Երգ. Օր. ՇԱՔԷ ՊԷՆԿԵԱՆ (Փարիզէն)



Imprimerie Spéciale du journal « Haratch »

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*ԼԻՈՆ.— Յ.Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղը իր ցաւակցութիւնները կը յայտնէ ընկերուհի Գեղանոյշ Գայթանճեանի եւ իր պարագաներուն, իր մօրեղբօր Գուրգէն Տապաղեանի վաղահաս մահուան առթիւ :*

*Այս առթիւ Տէր եւ Տիկին Յ. Հարէլեան եւ Տէր եւ Տիկին Սահակ Կէնճեան տաս-նակապ Ն. Ֆ. կը նուիրեն Կապոյտ Խաչի Տէսինի դպրոցին :*

### ՎԵՐԱՄՈՒՏ

*Յ. Կ. Խաչի Պոմոնի մասնաճիւղի վարչութիւնս կը փութայ յայտնել Պոմոնի շրջանի հայ հասարակութեան թէ՝ իր վարժարանին վերաբացումը պիտի կատարուի Հոկտեմբեր վեցին, հինգշաբթի օրը : Արձանագրութիւն, դասարանական բաժանում եւ դասաւանդութիւն տեղի պիտի ունենան նոյն օրը՝ առաւօտեան ժամը 9էն մինչեւ 12 :*

*Վարժարանին ուսուցիչն է Պ. Վահրամ Մխիթիք : Կը խնդրուի յարգելի ծնողքներէն նկատի ունենալ վերոյիշեալ թուականը :*



### ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

*ԻՍԻ.— Տէր եւ Տիկին Գ. Յովսէփեան եւ զաւակները իրենց սանահօր Յակոբ Գոչունեանի (Թարար) կսկծալի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի կը նուիրեն քսան Ն. Ֆ. Սեբաստիոյ Մուրատ Ռուսինեան վարժարանին եւ տասը Ն. Ֆ. Իսիի Խրիմեան դպրոցին : (Գումարները վճարուած են կազմակերպութեանց) :*

### ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ ՓՈՆ ՏԸ ՇԷՐԻԻԻ ՄԷՋ

*Փոն տը Շէրիւի եւ շրջակայքի Հայ Ազգ. Միութիւնը եւ Եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ այս կիրակի Ս. Գրիգոր Լուսաւորիչ մատրան մէջ, հանդիսաւոր պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի, երջանկայիշատակ Սիւրմէեան Արք.ի յիշատակին, Տէսինի հոգեւոր հովիւ Տէր Վարագ քհնյ. Աւագեանի կողմէ եւ դպրապետութեամբ Պ. Գրիգոր Մարտիրոսեանի :*

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ



### ԱԶԳԱՅԻՆ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

Ի յիշատակ Գիւտի Նշանագրացն Հայոց, Թարգմանութեան Ս. Գրոց, Սրբոց Թարգմանչաց եւ Հայ Մշակոյթի կազմակերպուած Փարիզի եւ շրջակայից Հայաստանեայց Առաքելական Եկեղեցւոյ Կրօն. Ընկերակցութեան կողմէ Սորպոնի Մեծ Ամփիթատրոնին մէջ :

*Այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2·30ին,*

Հովանաւորութեամբ՝

Հայրապետական Պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

*ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ.*— Օր. Իրիս Պիւլպիւլեան, Օր. Տիրատուրեան Ժոսլին *(մեներգ)*, Պ. Արտաշէս Գմբէթեան *(արտասանութիւն)*, Պ. Մկրտիչ Պօղոսեան *(մեներգ)*, *դաշնակի ընկերակցութեամբ* Պ. Կարպիս Աֆրիկեանի, Օր. Օֆելիա Քոմբաջեան *(դաշնակ)*, Օր. Մարանկոզեան *(արտասանութիւն)*, Օր. Թարօն *(մենապար)*, *Դպրոցասիրաց վարժարանի աշակերտուհիներ (մենապար, արտասանութիւն), Մխիթարեան վարժարանի սաները (արտասանութիւն), Հինգշաբթի օրուան դասընթացքներու աշակերտութիւնը (Անուշէն տեսրան, մեներգ, արտասանութիւն, անակնկալներ),*

*եւ* ՍԻՓԱՆ – ԿՈՄԻՏԱՍ *երգչախումբը ղեկավարութեամբ* ԿԱՐՊԻՍ ԱՖՐԻԿԵԱՆԻ :

*Տեղերը ապահովել կանխաւ : Ժողովրդական գիներով տոմսակները կը գտնուին Փարիզի Եկեղեցւոյ Դիւանատունը, շրջակայ եկեղեցիներու Հոգաբարձութեանց եւ բոլոր դասընթացքներու տեղական Կրթ. Յանձնախումբերու մօտ :*



### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ
### ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

*Տօնածառի հանդէսը, կիրակի՝ Դեկտեմբեր 18, կէսօրէ ետք :*

**ՅԵՐՀԱԹ ԱՊՊԱՍ** յուշագիր մը գրած է Ափրիկէի պետութեանց ղեկավարներուն։ Այս վերջիններուն ուշադրութեան կը հրաւիրէ Ալժերիոյ հարցին ծանրակըշիռ հանգամանքը եւ կը պահանջէ որ բոլորն ալ յստակ դիրք ճշդեն։ Ալժ. Ապստ. Ճակատի մէկ բանբերը գիտել տուած է թէ Մալի (նախկին Սուտան) արդէն իսկ դիրք ճշդած է, քանի որ պահանջած է սուտանցի զինուորներու քաշուիլը Ֆրանսական բանակէն։

**ԱՊՏԵՍԵԼԱՄԻ** (Ալժերիոյ երեսփոխաններէն) մահափորձին հեղինակը Մոհամէտ Ազրարար մահուան դատապարտուեցաւ, առջի օր, Փարիզի Զինուորական Ատեանին կողմէ։ Դատավարութիւնը ըսկըսած էր տասը օր առաջ։

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

**ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ** Տօնածառի հանդէսը, կիրակի՝ Դեկտեմբեր 18, կէսօրէ ետք։

## ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ ՓՈՆ ՏԸ ՇԷՐՒԻ ՄԷՋ

Փոն տը Շէրիւի եւ շրջակայքի Հայ Ազգ. Միութիւնը եւ Եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ այս կիրակի Ս. Գրիգոր Լուսաւորիչ մատրան մէջ, հանդիսաւոր պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի, երջանկայիշատակ Սիւրմէեան Արք.-ի յիշատակին, Տէսինի հոգեւոր հովիւ Տէր Վարագ քհնյ. Աւագեանի կողմէ եւ գպրապետութեամբ Պ. Գրիգոր Մարտիրոսեանի։



# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70-ԱՄԵԱԿԸ

## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ ՀՈԿՏ. 8-ԻՆ

### ՇԱԲԱԹ ԳԻՇԵՐ ՄԻՆՉԵՒ ԼՈՅՍ

5ՐԴ ԹԱՂԱՄԱՍԻ ՔԱՂԱՔԱՊԵՏԱՐԱՆԻ ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

**Place du Panthéon, Métros : St.-Michel et Gare du Luxembourg**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿԵՐ ՅՈՎԻԿ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

ԽՕՍՔ Կ'ԱՌՆԷ Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉԸ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺՆԻՆ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ

Երգ՝ Օր. ՍՄՍԱՐԵԱՆ։ դաշնակ՝ Օր. ՖԱՐՇԵԱՆ, արտասանութիւն՝ Օր. ԳԱՐՈՅԵԱՆ եւ Ընկ. ՀԱՊԵՇԵԱՆ, պար՝ Օր. ԹԱՐՕՆ, աքորտէօն՝ ԹՈՐՈՍ ՕՍՄԱՆՃԵԱՆ և պար՝ ՍԹԷՖԱՆ ՎԱՍԷՕՐ, Թառի վրայ կը նուագէ ԳԱՐԵԳԻՆ Խօսնակ՝ Ընկ. Ե. ԳՐԻԳՈՐԵԱՆ

Կէս գիշերին կը սկսին եւրոպական պարերը։

**ORCHESTRE ROBERTO SETO ET SES RUMBEROS**

Ճոխ եւ առատ պիւֆէ դիւրամատչելի գիներով — ՄՈՒՏՔ՝ 4 Ն. Ֆ.

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ

ՄԱՐՏ 12ԻՆ

ՍՈՐՊՈՆԻ ԱՄՖԻԹԱՏՐՈՆԻՆ ՄԷՋ

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

Զինուորական ծառայութենէ զերծ երիտասարդ վաճառորդ մը (վանտէօր) պոնեթըրիի համար որ կարք քշելու իրաւունք ունենայ։ Դիմել՝

ETS. CHEDIK
285, Rue St. Denis, Paris

## ՎԵՐԱՄՈՒՏ

Ֆ. Կ. Խաչի Պոմոնի մասնաճիւղի վարչութիւնս կը փութայ յայտնել Պոմոնի շրջանի հայ հասարակութեան թէ՝ իր վարժարանին վերաբացումը պիտի կատարուի Հոկտեմբեր վեցին, հինգշաբթի օրը։ Արձանագրութիւն, դասարանական բաժանում եւ դասաւանդութիւն տեղի պիտի ունենան նոյն օրը՝ առաւօտեան ժամը 9էն մինչեւ 12։

Վարժարանին ուսուցիչն է Պ. Վահրամ Մխիթիք։ Կը խնդրուի յարգելի ծընողքներէն նկատի ունենալ վերոյիշեալ թուականը։

## ՓՈԽԱՆ ՀՈԳԵՀԱՆԳՍՏԻ

Պ. Շնորհք Միքայէլեան (Փուաթիէէն) փոխան հոգեհանգստի, Միքայէլեան, Յակոբեան եւ Պօյաճեան գերդաստաններու ննջեցեալներուն յիշատակին, կը նըւիրէ տասը Ն. Ֆ. Հայ Կարմիր Խաչի Փարիզի դարմանատան, տասը Ն. Ֆ. ալ Անտէր հիւանդներու ֆոնտին։

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Շաբաթ, Հոկտ. 8, ժամը 21էն մինչեւ առաւօտ

ՍԱԼՈՆ ԱԼՀԱՄՊՐԱ, 340, Bd. Chave

ՊԱՏՈՒՈՅ ՆԱԽԱԳԱՀ

**Gaston Defferre**

Sénateur-Maire de Marseille

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿԵՐ ՅԱԿՈԲ ՊԱՊԻԿԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿԵՐ ԺԻՐԱՅՐ ԴԱՏԱԻՈՐԵԱՆ

Երիտասարդ Դաշնակցականներու կողմէ

խօսք կ'առնէ՝ Ընկ. ՅԱԿՈԲ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ

Գեղարուեստական ընտիր բաժին։ Երգ. Օր. ՇԱՔԷ ՊԷՆՆԵԱՆ (Փարիզէն)

Օր. Ս. ՊՕՅԱՃԵԱՆ (դաշնակ), Օր. Ժ. ՓԱՓԱԶԵԱՆ (երգ), Տիկ. ՇԱՀՄԻՐԵԱՆԻ ղեկավարութեամբ խմբապար, Օր. ԱԼԻՍ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ, Օր. ԱՐՄԻՆԷ ԳԱԼՓԱՔՃԵԱՆ (արտասանութիւն), փոքրիկն ՃՕՇԿՈՒՆԵԱՆ։

Կէս գիշերէն ետք եւրոպական պարեր՝

**JOSÉ BARRAL**

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Յ. Դ. Իսիի «Զաւարեան» կոմիտէն կը տօնէ «Դաշնակցութեան 70ամեակը», 16 Հոկտեմբեր, կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3էն, Իսիի Խրիմեան դպրոցին մէջ, ատենական կերուխումով։ Մանրամասնութիւնները յաջորդով։

## ՎԵՐԱՄՈՒՏ

Պելվիլ - Լիլայի Հինգշաբթի օրուան դասընթացքները կը սկսին Հոկտեմբեր 6ին, եշ. օր, 3 Րիւ Քլավէլ, Մէթրօ Փիրէնէ։

Imprimerie Spéciale du journal « Haratch »



## ԱԶԳԱՅԻՆ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

Ի յիշատակ Գիւտի Նշանագրացն Հայոց, Թարգմանութեան Ս. Գրոց, Սրբոց Թարգմանչաց եւ Հայ Մշակոյթի կազմակերպուած Փարիզի եւ շրջակայից Հայաստանեայց Առաքելական Եկեղեցւոյ Կրօն. Ընկերակցութեան կողմէ Սորպոնի Մեծ Ամփիթատրոնին մէջ։

Այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին,

Հովանաւորութեամբ՝

Հայրապետական Պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ.— Օր. Իրիս Պիւլպիւլեան, Օր. Տիրատուրեան ժոսլին (մեներգ), Պ. Արտաշէս Գմբէթեան (արտասանութիւն), Պ. Մկրտիչ Պօղոսեան (մեներգ), դաշնակի ընկերակցութեամբ Պ. Կարպիս Ափրիկեանի, Օր. Օֆելիա Քոմբաջեան (դաշնակ), Օր. Մարանկոզեան (արտասանութիւն),

Օր. Թարօն (մենապար), Դպրոցասիրաց վարժարանի աշակերտուհիներ (մենապար, արտասանութիւն, Մխիթարեան վարժարանի սաները (արտասանութիւն), Հինգշաբթի օրուան դասընթացքներու աշակերտութիւնը (Անուշէն տեսարան, մեներգ, արտասանութիւն, անակնկալներ),

եւ ՍԻՓԱՆ - ԿՈՄԻՏԱՍ երգչախումբը ղեկավարութեամբ ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ։

Տեղերը ապահովել կանխաւ։ Ժողովրդական գիներով տոմսակները կը գըտնուին Փարիզի Եկեղեցւոյ Դիւանատանը, շրջակայ եկեղեցիներու Հոգաբարձութեանց եւ բոլոր դասընթացքներու տեղական Կրթ. Յանձնախումբերու մօտ։

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70-ԱՄԵԱԿԸ

## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ ՀՈԿՏ. 8-ԻՆ

ՇԱԲԱԹ ԳԻՇԵՐ ՄԻՆՉԵՒ ԼՈՅՍ

5ՐԴ ԹԱՂԱՄԱՍԻ ՔԱՂԱՔԱՊԵՏԱՐԱՆԻ ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

**Place du Panthéon, Métros : St.-Michel et Gare du Luxembourg**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿԵՐ ՅՈՎԻԿ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

ԽՕՍՔ Կ'ԱՌՆԷ Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉԸ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺՆԻՆ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ

*Երգ՝ Օր. ՍՄՍԱՐԵԱՆ ։ ջութակ՝ Օր. ՖԱՐՇԵԱՆ, արտասանութիւն՝ Օր. ԳԱԲՈՅԵԱՆ եւ Ընկ. ՀԱՊԷՇԵԱՆ, պար՝ Օր. ԹԱՐՕՆ, աքորտէօն՝ ԹՈՐՈՍ ՕՍՄԱՆՃԵԱՆ և պար՝ ՍԹԷՖԱՆ ՎԱՍԷՕՐ, Թատրի վրայ կը նուագէ ԳԱՐԵԳԻՆ Խօսնակ՝ Ընկ. Ե. ԳՐԻԳՈՐԵԱՆ*

*Կէս գիշերին կը սկսին եւրոպական պարերը ։*

ORCHESTRE ROBERTO SETO ET SES RUMBEROS

Ճոխ եւ առատ պիւֆէ դիւրամատչելի գիներով — ՄՈՒՏՔ՝ 4 Ն. Ֆ.

---

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Պ. Ալեքսան Նուրեան եւ զաւակը՝ Դանիէլ, Տէր եւ Տիկին Տիգրան Թորոսեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Յովհաննէս Թորոսեան, Այրի Տիկին Մանուշակ Խրտըչեան, Տէր եւ Տիկին Վահան Խրտըչեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Վահագն Խրտըչեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Համբար Նուրեան եւ զաւակները, Պ. Պ. Միրիճան Նուրեան եւ Առաքել Նուրեան, Տէր եւ Տիկին Կարպիս Քէսթէքեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առտու (Հոկտեմբեր 9), յետ պատարագի, Փարիզի Ս. Յովհաննէս – Մկրտիչ եկեղեցւոյ մէջ իրենց կնոջ, մօր, մեծ մօր, խնամիին եւ զարմուհիին՝*

**ԱՏՐԻՆԷ ՆՈՒՐԵԱՆԻ**

*մահուան քառասունքին առթիւ ։*

*Կէսօրէն ետք՝ ժամը 16ին այց՝ գերեզմանատունը ։ Հաւաքուիլ գերեզմանատան դուռը՝* Փէռ Լաշէզ – Կամպէթա ։

*Ողբացեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ ըլլալ ։*

×

*Տէր եւ Տիկին Յարութիւն Տամլամեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առտու (Հոկտ. 9) Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, իրենց մօր եւ մեծ մօր՝*

**ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ԵՍԹԵՐ ՏԱՄԼԱՄԵԱՆԻ**

*մահուան վեցերորդ տարեդարձին առթիւ ։*

*Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները ։*

---

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Հ. Յ. Դ. Իսի «Զաւարեան» կոմիտէն կը տօնէ «Դաշնակցութեան 70ամեակը», 16 Հոկտեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Իսի Խրիմեան դպրոցին մէջ, աւանդական կերուխումով ։ Մանրամասնութիւնները յաջորդիւ ։*

×

Հ. Յ. Դաշնակցութեան 70ամեակը կը տօնուի Կրընոպլի մէջ, 30 Հոկտեմբեր, *Րիւ Ժէյի սրահին մէջ ։*

*Մանրամասնութիւնները յաջորդիւ ։*

---

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ԿՐԸՆՈՊԼԸ.— Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեանի ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, դպրոցի սրահին մէջ ։ Կարեւոր օրակարգ ։*

---



---

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

*Մայր Եկեղեցիի վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ այս Կիրակի, հայերէն տառերու գիւտի եւ Ս. Գրոց թարգմանութեան ազգային եւ եկեղեցական տօն, մասնաւոր հանդիսութեամբ կը կատարուի Հայրապետական Մաղթանք, Ն. Ս. Օծութիւն Տ. Տ. Վազգէն Ա. Ամենայն Հայոց Կաթողիկոսի օծման հինգերորդ տարելիցին առիթով ։ Հայ հասարակութիւնը կը հրաւիրուի ներկայ գտնուիլ այս կրկնակ տօնակատարութեանց ։*

× *Կիրովականէն Արտաշէս Սիմոնի Գէորգեան կը փնտռէ իր եղբայրը Վարազ Սիմոնի Գէորգեանը ։ Դիմել եկեղեցի ։*

---

### ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ

ՄԱՐՏ 12ԻՆ

ՍՈՐՊՈՆԻ ԱՄՓԻԹԱՏՐՈՆԻՆ ՄԷՋ

---



---

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

*Մինաս Մուսիկեանի (Վրաստան, Փուլէնկով Սեւ Ծովի ափին) զաւակները կը փնտռեն իրենց ծնողքին Փրանսաբնակ ազգականներն ու բարեկամները ։ Գրել՝ Համօ Քարաքէյեանի,*

10, Bd. A. Donaz, Marseille 15<sup></sup>

---

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Շաբաթ, Հոկտ. 8, ժամը 21էն մինչեւ առաւօտ

*ՍԱԼՈՆ ԱԼՀԱՄՊՐԱ,* 340, Bd. Chave

*ՊԱՏՈՒՈՅ ՆԱԽԱԳԱՀ*

**Gaston Defferre**

Sénateur-Maire de Marseille

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿԵՐ ՅԱԿՈԲ ՊԱՊԻԿԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿԵՐ ԺԻՐԱՅՐ ԴԱՏԱԻՈՐԵԱՆ

Երիտասարդ Դաշնակցականներու կողմէ

*խօսք կ'առնէ՝ Ընկ. ՅԱԿՈԲ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ*

*Գեղարուեստական ընտիր բաժին ։* Երգ. Օր. ՇԱՔԷ ՊԷՆԿԵԱՆ *(Փարիզէն)* Օր. Ս. ՊՕՅԱՃԵԱՆ *(ջութակ)*, Օր. Ժ. ՓԱՓԱԶԵԱՆ *(երգ)*, Տիկ. ՇԱՀՄԻՐԵԱՆԻ *ղեկավարութեամբ խմբապար*, Օր. ԱԼԻՍ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ, Օր. ԱՐՄԻՆԷ ԳԱԼՓԱՔՃԵԱՆ *(արտասանութիւն)*, *փոքրիկ* ՃՕՇԿՈՒՆԵԱՆ ։

*Կէս գիշերէն ետք եւրոպական պարեր՝*

JOSÉ BARRAL

---

## ԱԶԳԱՅԻՆ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

Ի յիշատակ Գիւտի Նշանագրացն Հայոց, Թարգմանութեան Ս. Գրոց, Սրբոց Թարգմանչաց եւ Հայ Մշակոյթի կազմակերպուած Փարիզի եւ շրջակայից Հայաստանեայց Առաքելական Եկեղեցւոյ Կրօն. Ընկերակցութեան կողմէ Սորպոնի Մեծ Ամփիթատրոնին մէջ ։

*Այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին,*

Հովանաւորութեամբ՝

Հայրապետական Պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

*ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ.—* Օր. Իրիս Պիւլպիւլեան, Օր. Տիրատուրեան Ժօսլին *(մեներգ)*, Պ. Արտաշէս Գմբէթեան *(արտասանութիւն)*, Պ. Մկրտիչ Պօղոսեան *(մեներգ)*, *ջութակի ընկերակցութեամբ* Պ. Կարպիս Աֆրիկեանի, Օր. Օֆելիա Քոմբաջեան *(ջութակ)*, Օր. Մարանկոզեան *(արտասանութիւն)*, Օր. Թարոն *(մենապար)*, *Դպրոցասիրաց վարժարանի աշակերտուհիներ (մենապար, արտասանութիւն, Մխիթարեան վարժարանի սաները (արտասանութիւն), Հինգշաբթի օրուան դասընթացքներու աշակերտութիւնը (Անուշէն տեսրան, մեներգ, արտասանութիւն, անսկնկալներ),*

*եւ ՍԻՓԱՆ – ԿՈՄԻՏԱՍ երգչախումբը ղեկավարութեամբ ԿԱՐՊԻՍ ԱՖՐԻԿԵԱՆԻ ։*

*Տեղերը ապահովել կանխաւ ։ ։ Ժողովրդական գիներով տոմսակները կը գտնուին Փարիզի Եկեղեցւոյ Դիւանատունը, շրջակայ եկեղեցիներու Հոգաբարձութեանց եւ բոլոր դասընթացքներու տեղական Կրթ. Յանձնախումբերու մօտ ։*

---

### ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ ՓՈՆ ՏԸ ՇԷՐԻԻ ՄԷՋ

*Փոն տը Շէրիի եւ շրջակայքի Հայ Ազգ. Միութիւնը եւ Եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ այս կիրակի Ս. Գրիգոր Լուսաւորիչ մատրան մէջ, հանդիսաւոր պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի, երջանկայիշատակ* Սիւրմէեան Արք.*ի յիշատակին, Տէօնի հոգեւոր հովիւ Տէր Վարագ քհնյ. Աւագեանի կողմէ եւ գլ․ րապետութեամբ Պ. Գրիգոր Մարտիրոսեանի ։*

---

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ Տօնածառի հանդէսը, Կիրակի՝ Դեկտեմբեր 18, կէսօրէ ետք ։*

---

### ՎԵՐԱՄՈՒՏ

*Պելվիլ – Լիլայի Հինգշաբթի օրուան դասընթացքները կը սկսին Հոկտեմբեր 6ին,* Ն2. օր, 3 Րիւ Քլավէլ, Մէթրօ Փիրէնէ ։

---



Imprimerie Spéciale du journal « Haratch »

Այրի Տիկին Արամ Ճինճեան, Տէր եւ Տիկին Աբրահամեան եւ զաւակները (Ամերիկա), Նալպանտեան, Տաքէսեան եւ Խարբուլթլեան ընտանիքները, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաները խոր ցաւով կը ծանուցանեն իրենց քրոջ, քրոջ զաւկին եւ զարմուհիին՝

ՄԱՐԻ ԺԱՄԿՈՉԵԱՆԻ

ցաւնալէտ մահը, որ տեղի ունեցաւ Հոկտեմբեր 5ին:

Յուղարկաւորութիւնը կը կատարուի, այս Ուրբաթ ժամը 16·15ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Փանթենի գերեզմանատունը:

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Պ. Ալեքսան Նուրեան եւ զաւակը՝ Դանիէլ, Տէր եւ Տիկին Տիգրան Թորոսեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Յովհաննէս Թորոսեան, Այրի Տիկին Մանուշակ Խըտըշեան, Տէր եւ Տիկին Վահան Խըտըշեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Վահագն Խըտըշեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Համբար Նուրեան եւ զաւակները, Պ. Պ. Միրիճան Նուրեան եւ Առաքել Նուրեան, Տէր եւ Տիկին Կարպիս Բէսթէքեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ (Հոկտեմբեր 9), յետ պատարագի, Փարիզի Ս. Յովհաննէս - Մկրտիչ եկեղեցւոյ մէջ իրենց կնոջ, մօր, մեծ մօր, խնամիին եւ զարմուհիին՝

ԱՏՐԻՆԷ ՆՈՒՐԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ:

Կէսօրէն ետք՝ ժամը 16ին այց՝ գերեզմանատունը: Հաւաքուիլ գերեզմանատան դուռը՝ Փէռ Լաշէզ - Կամպէթա:

Ողբացեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ ըլլալ:

×

Այրի Տիկին Սրբուհի Իսկէնտէրեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ իրենց ամուսնոյն եւ հօր՝

ՕՆՆԻԿ ԻՍԳԷՆՏԷՐԵԱՆԻ

մահուան քառասունքին, ինչպէս նաեւ իրենց մօր եւ մեծ մօր՝

ՏԻԳՐԱՆՈՒՀԻ ՊԻՊԼՐԵԱՆԻ

մահուան Բ. տարեդարձին առթիւ:

Կը հրաւիրուին ողբացեալներուն յիշատակը յարգողները:

# Հ. Յ. Դ.

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԿՐԸՆՈՊԼԸ. — Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեանի ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, ակումբի սրահին մէջ: Կարեւոր օրակարգ:

## ՎԵՐԱՄՈՒՏ ԿՐԸՆՈՊԼԻ ԴՊՐՈՑԻՆ

Կապոյտ Խաչի դպրոցը կը վերաբացուի այս Կիրակի առաւօտ, ժամը 9էն 10·30, ակումբին սրահը: Ծնողքներէն կը խնդրուի առաջին օրէն արձանագրել իրենց զաւակները:

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70-ԱՄԵԱԿԸ

## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ ՀՈԿՏ. 8-ԻՆ

ՇԱԲԱԹ ԳԻՇԵՐ ՄԻՆՉԵՒ ԼՈՅՍ

5ՐԴ ԹԱՂԱՄԱՍԻ ՔԱՂԱՔԱՊԵՏԱՐԱՆԻ ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

**Place du Panthéon, Métros : St.-Michel et Gare du Luxembourg**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿԵՐ ՅՈՎԻԿ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

ԽՕՍՔ Կ'ԱՌՆԷ Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉԸ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺՆԻՆ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ

Երգ՝ Օր. ՍՄՍԱՐԵԱՆ: դաշնակ՝ Օր. ՖԱՐՇԵԱՆ, արտասանութիւն՝ Օր. ԳԱԲՈՅԵԱՆ եւ Ընկ. ՀԱՊԷՇԵԱՆ, պար՝ Օր. ԹԱՐՕՆ, աքորտէօն՝ ԹՈՐՈՍ ՕՍՄԱՆՃԵԱՆ և պար՝ ՍԹԷՖԱՆ ՎԱՍԷՕՐ, Թառի վրայ կը նուագէ ԳԱՐԵԳԻՆ Խօսնակ՝ Ընկ. Ե. ԳՐԻԳՈՐԵԱՆ

Կէս գիշերին կը սկսին եւրոպական պարերը:

ORCHESTRE ROBERTO SETO ET SES RUMBEROS

Ճոխ եւ առատ պիւֆէ դիւրամատչելի գիներով

ՄՈՒՏՔ՝ 4 Ն. Ֆ.

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Մայր Եկեղեցիի վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ այս Կիրակի, հայերէն տառերու գիւտի եւ Ս. Գրոց Թարգմանութեան ազգային եւ եկեղեցական տօն, մասնաւոր հանդիսութեամբ կը կատարուի Հայրապետական Մաղթանք, Ն. Ս. Օծութիւն Տ. Տ. Վազգէն Ա. Ամենայն Հայոց Կաթողիկոսի օծման հինգերորդ տարեդարձին առիթով: Հայ հասարակութիւնը կը հրաւիրուի ներկայ գտնուիլ այս կրկնակ տօնակատարութեանց:



## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Շաբաթ, Հոկտ. 8, ժամը 21էն մինչեւ առաւօտ

ՍԱԼՈՆ ԱԼՀԱՄՊՐԱ, 340, Bd. Chave

ՊԱՏՈՒՈՅ ՆԱԽԱԳԱՀ

**Gaston Defferre**

Sénateur-Maire de Marseille

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿԵՐ ՅԱԿՈԲ ՊԱՊԻԿԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿԵՐ ԺԻՐԱՅՐ ԴԱՏԱՒՈՐԵԱՆ

Երիտասարդ Դաշնակցականներու կողմէ

խօսք կ'առնէ՝ Ընկ. ՅԱԿՈԲ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ

Գեղարուեստական ընտիր բաժին: Երգ. Օր. ՇԱՔԷ ՊԷՆԿԵԱՆ (Փարիզէն)

Օր. Ս. ՊՕՅԱՃԵԱՆ (դաշնակ), Օր. Ժ. ՓԱՓԱԶԵԱՆ (երգ), Տիկ. ՇԱՀՄԻՐԵԱՆԻ ղեկավարութեամբ խմբապար, Օր. ԱԼԻՍ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ, Օր. ԱՐՄԻՆԷ ԳԱԼՓԱՔՃԵԱՆ (արտասանութիւն), փոքրիկ ՃՕՇԿՈՒՆԵԱՆ:

Կէս գիշերէն ետք եւրոպական պարեր՝

JOSÉ BARRAL

ՇԱՒԻԼ. — Այս Կիրակի, պատարագ չի կատարուիր:

### ՎԵՐԱՄՈՒՏ

Պէլվիլ - Լիլայի Հինգշաբթի օրուան դասընթացքները կը սկսին Հոկտեմբեր 6-ին, Եշ. օր, 3 Րիւ Քլավէլ, Մէթրօ Փիրէնէ:

Imprimerie Spéciale du journal « Haratch »

### Կ'ՈՒԶՈՒԻՆ

Ջինուորական ծառայութենէ զերծ երիտասարդ վաճառորդ մը (վանտէօր) պատերբրիի համար որ կարգ քշելու իրաւունք ունենայ: Դիմել՝

ETS. CHEDIK
285, Rue St. Denis, Paris



## ԱԶԳԱՅԻՆ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

Ի յիշատակ Գիւտի Նշանագրացն Հայոց, Թարգմանութեան Ս. Գրոց, Սրբոց Թարգմանչաց եւ Հայ Մշակոյթի կազմա կերպուած Փարիզի եւ շրջակայից Հայաստանեայց Առաքելական Եկեղեցւոյ Կրօն. Ընկերակցութեան կողմէ Սորպոնի Մեծ Ամփիթատրոնին մէջ:

Այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2·30ին,

Հովանաւորութեամբ՝

Հայրապետական Պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ. — Օր. Իրիս Պիւլպիւլեան, Օր. Տիրատուրեան Ժոսլին (մեներգ), Պ. Արտաշէս Գմբէթեան (արտասանութիւն), Պ. Մկրտիչ Պօղոսեան (մեներգ), դաշնակի ընկերակցութեամբ Պ. Կարպիս Աֆրիկեանի, Օր. Օֆելիա Քոմբաչեան (դաշնակ), Օր. Մարանկոզեան (արտասանութիւն), Օր. Թարօն (մենապար), Դպրոցասիրաց վարժարանի աշակերտուհիներ (մենապար, արտասանութիւն, Մխիթարեան վարժարանի սաները (արտասանութիւն), Հինգշաբթի օրուան դասընթացքներու աշակերտութիւնը (Անուշէն տեսրան, մեներգ, արտասանութիւն, անակնկալներ), եւ ՍԻՓԱՆ - ԿՈՄԻՏԱՍ երգչախումբը ղեկավարութեամբ ԿԱՐՊԻՍ ԱՖՐԻԿԵԱՆԻ:

Տեղերը ապահովել կանխաւ: Ժողովրդական գիներով տոմսակները կը գտնուին Փարիզի Եկեղեցւոյ Դիւանատունը, շրջակայ եկեղեցիներու Հոգաբարձութեանց եւ բոլոր դասընթացքներու տեղական Կրթ. Յանձնախումբերու մօտ:

անհնազանդութեան կոչը : «Դասաձանու – թիւն է ամբաստանել եւ չարանախարար աղտոտել Փրանսական բանակը որ Ալժէ – րիոյ մէջ կը կռուի Ֆրանսայի համար» կ՚ըսեն ի մէջ այլոց աւելի քան երկու հարիւր ծանօթ դէմքեր , որոնց մէջ՝ մարեշալ Ժուէն , Հանրի Պոտօ , Ժիւլ Ռոմէն , Հանրի Մասիս , Կապրիէլ Մարսէլ , փրոֆ . Ալաժուանին :

ԶՕՐ . ՍԱԼԱՆ Պետութեան Խորհուրդին դիմեց բողոքելու համար իրեն դէմ տրրուած վճիռին համար : Այս առթիւ Տիկին Սալան հաղորդագրութիւն մը հրապարակած է ուր կ՚ըսէ թէ ձեռք առնուած միջոցը ալ աւելի զայթակղեցուցիչ է երբ անդին Ժ . Փօլ Սարթր , ազատօրէն կրնայ արտայայտել իր անջատողականի գաղափարները առանց որեւէ վնաս կրելու :

ՊՈԼՍՈՅ դիպղնարանի տնօրէնը ձերբակալուած է : Ըսուեցաւ թէ , անցեալ Ապրիլին Մենտերէսի կառավարութեան հրամանով ցոյցերու ընթացքին սպաննուած ուսանողներու մարմինները անհետացուցած էր : Ձերբակալուած են նաեւ ոստիկան մը , բժիշկ մը եւ գատախազի օգնական մը :

«ԲԵԶԻ ՀԵՏ ժամ մը անցընելու համար Եթովպիան կուտամ» ,գրած էր Մուսոլինի իր եղերխային՝ Մոկտա Ֆոնթանյի որ անձնասպան եղաւ , առջի օր Ժընեւի մէջ , իր յուշերը հրատարակելէն առաջ :

ԿԵԴՐՈՆԱԿԱՆ Ֆրանսայէն ետք փոթորիկը տարածուեցաւ երկրին հարաւ – արեւելեան կողմը : Վնասներ կան Մարսէյլի շրջանը :

# Հ. Յ. Դ.

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԿՐԸՆՈՊԼԸ .— Հ . Յ .Դ . Եօթնեղբայրեանի ընդհ . ժողովը այս Շաբաթ , ժամը 21ին , ակումբի սրահին մէջ : Կարեւոր օրակարգ :

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ

ՄԱՐՏ 12ԻՆ

ՍՈՐՊՈՆԻ ԱՄՓԻԹԱՏՐՈՆԻՆ ՄԷՋ

## ՎԵՐԱԲԱՑՈՒՄ

Հայկազեան վարժարանի

32, Rue de Trévise, PARIS (9e)

Ամէն Հինգշաբթի Հոկտեմբեր 6էն ըսկըսեալ ժամը 14ին , կը դասաւանդէ Տիկին Այվազեան :

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70-ԱՄԵԱԿԸ

## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ ՀՈԿՏ. 8-ԻՆ

### ՇԱԲԱԹ ԳԻՇԵՐ ՄԻՆՉԵՒ ԼՈՅՍ

5ՐԴ ԹԱՂԱՄԱՍԻ ՔԱՂԱՔԱՊԵՏԱՐԱՆԻ ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

**Place du Panthéon, Métros : St.-Michel et Gare du Luxembourg**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿԵՐ ՅՈՎԻԿ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

ԽՕՍՔ Կ'ԱՌՆԷ Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉԸ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺՆԻՆ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ

Երգ՝ Օր . ՍՄՍԱՐԵԱՆ : դաշնակ՝ Օր . ՖԱՐՇԵԱՆ , արտասանութիւն՝ Օր . ԳԱԲՈՅԵԱՆ եւ Ընկ . ՀԱՊԷՇԵԱՆ , պար՝ Օր . ԹԱՐՕՆ , աքորտէօն՝ ԹՈՐՈՍ ՕՍՄԱՆՃԵԱՆ և պար՝ ՍԹԷՖԱՆ ՎԱՍԷՕՐ , Թառի վրայ կը նուագէ ԳԱՐԵԳԻՆ Խօսնակ՝ Ընկ . Ե . ԳՐԻԳՈՐԵԱՆ

Կէս գիշերին կը սկսին եւրոպական պարերը :

**ORCHESTRE ROBERTO SETO ET SES RUMBEROS**

Ճոխ եւ առատ պիւֆէ դիւրամատչելի գիներով

ՄՈՒՏՔ՝ 4 Ն. Ֆ.

## ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ ՓՈՆ ՏԸ ՇԷՐԻԻ ՄԷՋ

Փոն տը Շէրիի եւ շրջակայքի Հայ Ազգ . Միութիւնը եւ Եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ այս կիրակի Ս . Գրիգոր Լուսաւորիչ մատրան մէջ , հանդիսաւոր պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի , երջանկայիշատակ Սիւրմէեան Արք . ի յիշատակին , Տէսինի հոգեւոր հովիւ Տէր Վարագ քհնյ . Աւագեանի կողմէ եւ դպրապետութեամբ Պ . Գրիգոր Մարտիրոսեանի :

## ՎԵՐԱՄՈՒՏ ԿՐԸՆՈՊԼԻ ԴՊՐՈՑԻՆ

Կապոյտ Խաչի դպրոցը կը վերաբացուի այս Կիրակի առաւօտ , ժամը 9էն 10.30 , դպրոցին սրահը : Ծնողքներէն կը խնդրուի առաջին օրէն արձանագրել իրենց զաւակները :

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՎԻԷՆ .— Դաշնակցութեան 70ամեակը , կը տօնուի Նոյեմբեր վեցին :

Կիրակի կէսօրէ վերջ , Սէրքլը Կաթոլիքի սրահը :

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Շաբաթ , Հոկտ . 8 , ժամը 21էն մինչեւ առաւօտ

ՍԱԼՈՆ ԱԼՀԱՄՊՐԱ , 340, Bd. Chave

ՊԱՏՈՒՈՅ ՆԱԽԱԳԱՀ

**Gaston Defferre**

Sénateur-Maire de Marseille

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿԵՐ ՅԱԿՈԲ ՊԱՊԻԿԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿԵՐ ԺԻՐԱՅՐ ԴԱՏԱԻՈՐԵԱՆ

Երիտասարդ Դաշնակցականներու կողմէ

խօսք կ՚առնէ՝ Ընկ . ՅԱԿՈԲ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ

Գեղարուեստական ընտիր բաժին : Երգ . Օր . ՇԱՔԷ ՊԷՆԿԵԱՆ (Փարիզէն) Օր . Ս . ՊՕՅԱՃԵԱՆ (դաշնակ) , Օր . Ժ . ՓԱՓԱԶԵԱՆ (երգ) , Տիկ . ՇԱՀՄԻՐԵԱՆԻ ղեկավարութեամբ խմբապար , Օր . ԱԼԻՍ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ , Օր . ԱՐՄԻՆԷ ԳԱԼՓԱՔՃԵԱՆ (արտասանութիւն) , փոքրիկ ՃՕՇԿՈՒՆԵԱՆ :

Կէս գիշերէն ետք եւրոպական պարեր՝

**JOSÉ BARRAL**

## ԱԶԳԱՅԻՆ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

Ի յիշատակ Գիւտի Նշանագրացն Հայոց , Թարգմանութեան Ս . Գրոց , Սրբոց Թարգմանչաց եւ Հայ Մշակոյթի կազմա կերպուած Փարիզի եւ շրջակայից Հայաստանեայց Առաքելական Եկեղեցւոյ Կրօն . Ընկերակցութեան կողմէ Սորպոնի Մեծ Ամփիթատրոնին մէջ :

Այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին ,

Հովանաւորութեամբ՝

Հայրապետական Պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ .— Օր . Իրիս Պիլպիլեան , Օր . Տիրատուրեան ժոլին (մեներգ) , Պ . Արտաշէս Գմբէթեան (արտասանութիւն) , Պ . Մկրտիչ Պօղոսեան (մեներգ) , դաշնակի ընկերակցութեամբ Պ . Կարպիս Աֆրիկեանի , Օր . Օֆելիա Քոմբաջեան (դաշնակ) , Օր . Մարանկոզեան (արտասանութիւն) , Օր . Թարոն (մենապար) , Դպրոցասիրաց վարժարանի աշակերտուհիներ (մենապար , արտասանութիւն) , Մխիթարեան վարժարանի սաները (արտասանութիւն) , Հինգշաբթի օրուան դասընթացքներու աշակերտութիւնը (Անուշէն տեսարան , մեներգ , արտասանութիւն , անակնկալներ) , եւ ՍԻՓԱՆ – ԿՈՄԻՏԱՍ երգչախումբը ղեկավարութեամբ ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ :

Տեղերը ապահովել կանխաւ : : Ժողովրդական գիներով տոմսակները կը գտնուին Փարիզի Եկեղեցւոյ Դիւանատունը , շրջակայ եկեղեցիներու Հոգաբարձութեանց եւ բոլոր դասընթացքներու տեղական կրթ . Յանձնախումբերու մօտ :

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

*Արմենակ Փափազեան եւ Յովհաննէս Թորոսեան ընտանիքները 50ական Ն. Ֆ. կը նուիրեն Մշակոյթի Տան, Տիկին Աւոբինէ Նուրեանի մահուան քառասունքին առթիւ: (Սատանայ Յառաջէն):*

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան Ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ ժամը 21ին իր նոր հաւաքատեղին:*

*Ներկայ կ'ըլլայ Շրջ. կոմիտէի ներկայացուցիչը: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:*

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ՍԵԲԱՍՏԻՈՅ Մուրատ Ուս. Միութեան վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր անդամները անխտիր, այս Կիրակի (Հոկտ. 9), առաւօտ ժամը 10ին, Իսիի Խրիմեան դպրոցը:*

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

*Կիրակի (16 Հոկտ.) ժամը 10.30ին, ձայնաւոր պատարագ՝*

### ԳՐԻԳՈՐ ՊԵՏՐՈՍ ԺԵ. ԿԱՐԴԻՆԱԼ ԱՂԱՃԱՆԵԱՆԻ

*Կաթողիկոս — Պատրիարք Տանն Կիլիկիոյ Եպիսկոպոսական ձեռնադրութեան քանհինգերորդ տարեդարձին առթիւ:*

*Նկատել այս ազդը իբր հրաւէր:*

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

*Զինուորական ծառայութենէ զերծ երիտասարդ վաճառորդ մը (վանտէօր)* պոնեթըրիի *համար որ կարք բչելու իրաւունք ունենայ: Դիմել՝*

ETS, CHEDIK

285, Rue St. Denis, Paris Tél. CUT. 62-80

## *ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ*

*ՎԻԷՆ.—* Դաշնակցութեան 70ամեակը, կը տօնուի Նոյեմբեր վեցին:

Կիրակի կէսօրէ վերջ, Սէրքլը Կաթոլիքի սրահը:

# Établissements G. HAGOPIAN

## Կ. ՅԱԿՈԲԵԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ

**10, Rue du Caire, PARIS - 2ᵉ Tél.: CEN. 78-44 et CEN. 66-96**

ՇԱՏ ՅԱՐՄԱՐ ԳԻՆԵՐՈՎ — ՄԵԾԱՔԱՆԱԿ ԵՒ ՓՈՔՐԱՔԱՆԱԿ

ԿԸ ԾԱԽԷ ՀԵՏԵՒԵԱԼ ԿԵՐՊԱՍՆԵՐԸ

ԷՆԹԵՐԼՈՔ INTERLOCK — ԺԱՔԱՐ JACQUARD

ՄԱՅ ԱՆԿԼԷԶ MAILLE ANGLAISE — ՄԱՅ ՍՒԻՍ MAILLE SUISSE

ՖԻԼ Տ'ԷՔՈՍ FIL D'ÉCOSSE

ԲԱՄՊԱԿԷ ԺԻՍՍՈՒԱՓՆԵՐ

ՊՈՒՔԼԷԹ BOUCLETTE — ՊԱՆԼՈՆ BANLON

ԶԱՆԱԶԱՆ ՏԵՍԱԿՈՎ ԵՒ ԳՈՅՆՈՎ ԹՐԻԳՈՅԻ ՊԱՏՐԱՍՏ ԱՊՐԱՆՔՆԵՐ

ՎԵՐՋԻՆ ՆՈՐԱՁԵՒՈՒԹԻՒՆՆԵՐՈՎ

ԿԸ ԾԱԽԷ ՋՈՒՏ ԲՈՒՐԴԷ ԴԵՐՁԱՆ 2-28, 2-40, ԵՒ ԽԱՌՆ ԲՈՒՐԴՈՎ 1-26, 1-40

## ՅԱՐՄԱՐ ԳԻՆԵՐ

ԵՒ

## ՎՃԱՐՈՒՄԻ ԼԱՅՆ ԴԻՒՐՈՒԹԻՒՆՆԵՐ

## Կ'ՈՒԶՈՒԻ

*Դերձակի աշկերտ մը, 14-5 տարեկան, ներկայացուած ծնողքին կողմէ: Դիմել՝*

PAPAZIAN, 16 Rue Etienne Marcel, Paris 2

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ԱԼՖՈՐՎԻԼԻ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ԿԻՐԱԿԻ, ՀՈԿՏԵՄԲԵՐ 30ԻՆ

ԺԱՄԸ 16ԷՆ ԿԷՍ ԳԻՇԵՐ

**GEORGE V, 31 Ave. George V, Paris**

Եղանակին առաջին պարահանդէսը

Զանազան անակնկալներ

ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ JEAN CANTEL

**Deux Orchestres Attractions Tombola**

*Կը խնդրուի կանխաւ ապահովել սեղանները հեռաձայնելով Միութեան գրասենեակը:* ՓՐՕվանս 77-73 ՄՈՒՏՔ 5 Ն. ՖՐԱՆՔ

## Ահան Արագ

ԵՒ

ՆՈՒՐԲ ՃԱՇԱԿՈՎ — ՄԵԾ ԽՆԱՄՔՈՎ

ԱՄԷՆ ՏԵՍԱԿ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ԵՒ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ

### ՏՊԱՐԱՆ "ՅԱՌԱՋ"

Ամուսնական հրաւիրատոմս

Առեւտրական նամակի եւ այլ թուղթեր

Ամէն գոյնով եւ չափով ազդ

Հանդէսի տոմսակ եւ թռուցիկ

ՏՊԱՐԱՆ

**HARATCH**

32, RUE DE TRÉVISE, 32

TÉL.: PRO. 86-60 **PARIS, 9ᵉ** MÉTRO: CADET

## ԾՐԱՐՆԵՐՈՒ ԱՌԱՔՈՒՄ ԴԷՊԻ ԽՈՐՀ. ՄԻՈՒԹԻՒՆ

### SICOMEX

*Ֆրանսական կառավարութենէն եւ Մոսկուայի Ինթուրիսթէն ճանչցուած հաստատութիւն:*

**SICOMEX**

20, Rue Royale, PARIS 8ᵉ

Téléphone : OPE. 67-77

Métro : CONCORDE et MADELEINE

*ՄԻԱԿ ՏՈՒՆԸ*

*որ կարելիութիւնը կուտայ ձեզի, հետեւեալ երկու ձեւերով ծրարներ ղրկելու:*

*1.— Մեր ծախած ապրանքներով, որոնց ցանկը ճոխ է եւ որակը ընտիր:*

*ԻՏԱԼԻԱՅԷՆ ուղղակի ներածում,* քարտիկաւ *եւ զուտ բուրդէ վերնաւուներ՝ վերջին նորաձեւութիւն:*

*ԱՆԳԼԻԱՅԷՆ ուղղակի ներածում, զուտ բուրդէ կերպասներ և այլ ապրանքներ: Մուշտակի նմանակ վերարկուներ, անձրեւանոց, ներքնազգեստ, գուլպայ, վիրէնեան բուրդով շալ, կօշիկ, ժամացոյց, եւայլն... ԱՄԷՆԷՆ ՆՊԱՍՏԱՒՈՐ ԳԻՆԵՐՈՎ:*

*Մեր ապրանքներուն գիներուն մէջ նախատեսուած են մաքսային տուրքերը, արտօնութեան, ապահովագրութեան, ծրարումի եւ ստացողի ծախքերը:*

*ՈՉ ՄԷԿ ԾԱԽՔ ծրարը ստացողին կողմէ:*

*Մեր ապրանքներուն ԱՌԱՔՈՒՄԻ ծախքն է 25 Ն. Ֆ. մինչեւ 20 քիլօ:*

*2.— Ձեր բերած ապրանքներն ալ կ'ընդունինք, պայմանաւ որ նոր ըլլան:*

*ԱՐԱԳ ՅԱՆՁՆՈՒՄ՝ 2-4 շաբաթէն:*

ՈՒԶԵՑԷՔ ԵՒ ԱՆՄԻՋԱՊԷՍ ՊԻՏԻ ՍՏԱՆԱՔ ՄԵՐ ԲԱՑԱՏՐԱԿԱՆ ԵՒ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ՑՈՒՑԱԿՆԵՐԸ:

## MORY et Cᴵᴱ

ՆՈՒԷՐՆԵՐՈՒ ԵՒ ԾՐԱՐՆԵՐՈՒ ԱՌԱՔՈՒՄ ԴԷՊԻ ԽՈՐՀՐԴ. ՄԻՈՒԹԻՒՆ:

Գնեցէք զանոնք ձեր ուզած տեղը եւ առաքումը մեզի վստահեցէք: Նուազագոյն ծախքերով կը դրկենք Խորհրդ. Միութիւն:

*Դիմեցէք մեր նոր գիները գիտնալու համար.—*

**10, Rue St. Vincent de Paul, Paris 10ᵉ**

(PRÈS DE LA GARE DU NORD)

**Téléphone : TRU. 27-70**

## ԿԻՆԷԻ ՎԱՐՉԱՊԵՏԸ 2 ԺԱՄ ԿԸ ԽՕՍԻ

ՄԱԿի ընդհ. ժողովին, Կինէի վարչապետը՝ Սեքու Թուրէ երկու ժամ խօսած է ու կրկնած, գրեթէ բառ առ բառ, Ալճերիոյ տեսակէտները։

Պահանջելէ ետք վերջ դնել գաղթատիրութեան եւ Քոնկոյի մէջ կիրարկուած քաղաքականութեան, անդրադարձած է Ալժերիոյ։ Կինէի վարչապետը գիտել տուած է թէ՝ դժուար է անտեսել Ալժերիոյ պատերազմը, որ կը շարունակուի Ֆրանսայի յամառութեան պատճառով եւ հակառակ անոր որ ՄԱԿը ընդունած է այդ պատերազմին անարդարութիւնը եւ անհեթեթութիւնը։ Սեքու Թուրէի կարծիքով պատասխանատուն միայն Ֆրանսան չէ։

Այս նախադասութիւնը յստակ չէ եւ շատեր ուզած են գիտնալ թէ ի՞նչ պէտք է հասկնալ։

Պահանջած է որ ՄԱԿը գործնական եւ արդար լուծում մը գտնէ Ալժերիոյ պատերազմին վերջ տալու համար։ Միեւնոյն ժամանակ ազատ ընտրութիւններ պէտք է տեղի ունենան։

Նեհրու նոր առաջարկ մը բերած է ՄԱԿի ընդհ. քարտուղարութեան համար։ Համբրշոլդ ունենայ հինգ օգնականներ, 5 աշխարհները ներկայացնող եւ ոչ Խրուշչեւի առաջարկածին պէս երեք հոգինոց ղեկավարութիւն մը տարբեր հոսանքներէ որոնցմէ մէկուն վեթօն անելի մատնէ ՄԱԿը։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Գուրգէն Տապաղեան, զաւակները եւ ընտանեկան բոլոր պարագաները իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն Կաթ. Պատուիրակ Սերովբէ Եպիսկ. Մանուկեանի, Տէսինի Կրօն. Ընկերակցութեան, Լիոնի երկու հոգեւոր հայրերուն, Վալանսի հոգեւոր հովիւին, Տէսինի եւ Լիոնի եկեղեցիներուն, որոնք անձամբ եւ ծաղկեպսակով մասնակցեցան իրենց սուգին, ինչպէս նաեւ բոլոր անոնց որոնք անձամբ կամ գրաւոր ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն, հօր եւ ազգականին՝

ԳՈՒՐԳԷՆ ՏԱՊԱՂԵԱՆԻ

կսկծալի մահուան առթիւ։

×

Այս տխուր առթիւ, փոխան ծաղկեպսակի, Տէր եւ Տիկին Սարգիս Առաքելեան յատուն Ն. Ֆ. ը՛ը նուիրեն Մշակոյթի Տան Յ. Օնպաշեան սրահին։ (Ստանալ «Յառաջ»էն)։

## ՀԱՅԵՐԷՆԻ ՆՈՐ ԴԱՍԸՆԹԱՑՔ ՄԸ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղը ուրախութեամբ կը ծանուցանէ թէ բացուած է հայերէնի նոր դասընթացք մը՝ 215 Պուլվ. Սէն Ժերմէն, Փարիզ (7), ուսուցչութեամբ Տիկին Ա. Զիթունիի։

Կը խնդրուի ծնողներէն այժմէն արձանագրել իրենց զաւակները Տիկին Ա. Գազազեանի մօտ, 6 Րիւ Սէն Սիւլփիս, Փարիզ (6), կէսօրէ վերջ՝ ժամը 14էն սկսեալ, ամէն օր։

Դասերը կը սկսին այս Հինգշաբթի, Հոկտեմբեր 13ին, կէսօրէ վերջ ժամը 14ին։ Նոյն օրը տեղի կ՚ունենան նաեւ արձանագրութիւնները։

## ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Պանեօ Քաշանի խումբը ցաւակցութիւն կը յայտնէ ընկերուհի Օտեթ Արեւեանի եւ ընտանիքին իրենց մօր եւ ազգականին՝ Տիկին Աճէմեանի մահուան առթիւ։

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

Կիրակի (16 Հոկտ.) ժամը 10·30ին, ձայնաւոր պատարագ՝

ԳՐԻԳՈՐ ՊԵՏՐՈՍ ԺԵ. ԿԱՐԴԻՆԱԼ ԱՂԱՃԱՆԵԱՆԻ

Կաթողիկոս – Պատրիարք Տանն Կիլիկիոյ Եպիսկոպոսական ձեռնադրութեան քսանհինգերորդ տարեդարձին առթիւ։

Նկատել այս ազդը իբր հրաւէր։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ ԵՒ ՄԱՏԱՂ

Փարիզի Հաճնոյ Հայր. Միութեան նախաձեռնութեամբ Հաճնոյ հերոսամարտի 40րդ տարեդարձին առթիւ, ութ հազար զինեալներու նշխարաց, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Փարիզի Հայոց Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, 15 Րիւ Ժան Կուժօն, Փարիզ, այս Կիրակի առաւօտ։ Կը հրաւիրուին հայրենակիցները եւ անոնց խնկելի յիշատակը յարգողները։ Յետ պատարագի մատաղ, Մշակոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ, Փարիզ (9)։

## ՎԵՐԱՄՈՒՏ ԿՐԸՆՈՊԼԻ ԴՊՐՈՑԻՆ

Կապոյտ Խաչի Կրընոպլի դպրոցը վերաբացուած է։ Դասաւանդութիւնները տեղի կ՚ունենան Կիրակի առաւօտները ժամը 9էն սկսած եւ ձրի։

Ծնողներէն կը խնդրուի արձանագրութիւններուն համար շուշանալ, որպէսզի դասընթացքները կանոնաւոր կերպով տեղի ունենան։



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Դաշնակցութեան 70ամեակը կը տօնուի Նոյեմբեր 19ին, Վալանսի մէջ։

×

ՎԻԷՆ.— Դաշնակցութեան 70ամեակը, կը տօնուի Նոյեմբեր վեցին։

Կիրակի կէսօրէ վերջ, Սէրքլը Կաթոլիքի սրահը։

×

Հ. Յ. Դաշնակցութեան 70ամեակը կը տօնուի Կրընոպլի մէջ, 30 Հոկտեմբեր, Րիւ Ժէի սրահին մէջ։

Մանրամասնութիւնները յաջորդով։

×

Հ. Յ. Դ. Իսիի «Զաւարեան» կոմիտէն կը տօնէ «Դաշնակցութեան 70ամեակը», 16 Հոկտեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Իսիի Խրիմեան դպրոցին մէջ, ուսանողական կերուխումով։ Մանրամասնութիւնները յաջորդով։

## ՀԱՃԸՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻՆ ՏԱՐԵԴԱՐՁԸ

ՇԱՍ.— Հաճընի Հայր. Ընդհ. Միութիւնը «Արծուաբոյն»ի հերոսամարտին 40րդ տարեդարձը կը տօնէ մեծ շուքով, այս Կիրակի, սովորական սրահին մէջ։ Տէսինի նոր ընծայ Տէր Վարագ քհնյ. Աւագեան հոգեհանգստեան հանդիսաւոր պատարագ պիտի մատուցանէ 8000 անթաղ նահատակներու խնկելի յիշատակին, եւ պիտի քարոզէ։

Կը հրաւիրուին շրջանի բոլոր հայրենակիցները եւ նահատակներուն յիշատակը յարգողները։

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Սերաստիոյ Մուրատ Ուսումնասիրաց Միութիւնը Հայաստանէն նոր բերուած հայախօս ժապաւէն մը կը ներկայացնէ Հոկտեմբեր 18ին։ Մանրամասնութիւնները յաջորդով։



## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան Ենթակոմիտէին ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ ժամը 21ին իր նոր հաւաքատեղին։

Ներկայ կ՚ըլլայ Շրջ. կոմիտէի ներկայացուցիչը։ Կը խնդրուի ճշդապահ ըլլալ։

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. «Վարանդեան» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները, այս Ուրբաթ, ժամը 20·30ին, Յոյներու սրահը։

Կարեւոր օրակարգ։

ՊԱՆԵԽՕ – ՔԱՇԱՆԻ Հ. Յ. Դ. «Արծիւ» Ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս Հինգշաբթի ժամը 21ին, ծանօթ հաւաքատեղին։

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Ռոստոմ» խումբի ժողովը այս Շաբաթ իրիկուն, ժամը 21ին, ընկեր Մանուկի բնակարանը։ Կարեւոր օրակարգ։

ՇԱՒԻԼ.— Հ. Յ. Դ. Արզրութեան խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21·30ին, սովորական հաւաքատեղին։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՇԱՒԻԼ.— Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Երկուշաբթի օր, ժամը 4ին դպրոցին սրահը։ Ներկայ կ՚ըլլայ Կեդր. վարչութեան ներկայացուցիչը։

## ՎԵՐԱՄՈՒՏ ՇԱՍԻ ԴՊՐՈՑԻՆ

Հաճնոյ Հայր. Ընդհ. Միութեան հովանաւորեալ դպրոցը վերաբացուած է, Հինգշաբթի եւ Կիրակի առաւօտները ժամը 10 – 12, ուսուցչութեամբ մանկավարժ Պօղոս Ապրազեանի, ծնողներէն կը խնդրուի անյապաղ ղրկել իրենց զաւակները։





## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆր. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆր. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 15 Ն. Ֆր. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆր. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆր. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆր. | » » » |
| «ԾԱԽՈՒ Է» | 20 Ն. Ֆր. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են։

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է։

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել վարչութեան։

ԼԻԲԱՆԱՆԻ վարչապետը՝ Սայէպ Սալամ խօսք առնելով Նիւ Եորքի Օվըրսիզ Փրէս Քլըպի ճաշին մեծարեց Ալժերիոյ ըմբոստները, որոնք «130 տարի է կը պայքարին Ֆրանսայի տիրապետութեան դէմ եւ որոնք վեց տարի է տաք պատերազմ մը կը վարեն ձեռք ձգելու համար իրենց անկախութիւնը»:

«ԲԱՆՈՒՈՐԱԿԱՆ ՈՒԺԸ» եւ «Քրիստոնեայ Աշխատաւորներու Դաշնակցութիւնը» ունկնդրութիւն մը ուզած են նախագահ տը Կոլէն իրենց մտահոգութիւնները յայտնելու համար Ալժերիոյ մասին:

ԳԵՐՄԱՆԱՑԻՆԵՐԸ գիւտ մը բրած են որուն անունն է, ժողովրդական լեզուով, «Աղքատին հիւլէական ռումբը»: Արդարեւ Գերմանացիք սկսած են ձեւ մը գտնել «հարստացած իւրանիոմ» արտադրելու համար: Ամերիկացիք խնդրած են Պոնի կառավարութենէն որ մարդու չըսուի գիւտը, բայց երեւան կ'ելլէ որ արդէն Պրազիլի ծախուած է, իսկ Հոլանտացիք իրենք ալ սկսած են գտնել գաղտնիքը:

## «ՅԱՌԱՋ»Ի ԲԱՐԳԱՒԱՃՄԱՆ ՀԱՄԱՐ

Սալէն տը ժիրոյէն Պ. Յովհաննէս Պուլանեան փոխան ծաղկեպսակի 30 Ն. Ֆ. կը նուիրէ «Յառաջ»ին, Մխիթար Պետրոսեանի մահուան առթիւ (Փիւ Ժէ Սիւր Արժանս):

×

Ընկ. Կ. Թ. քսան Ն. Ֆ., իր այցելութեան առթիւ:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէր եւ Տիկին Կիւլպալեան, Այրի Տիկ. Սրբուհի Իսքէնտէրեան, Տիկին Ալիս Մեսրոպեան կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին, իրենց մօր՝

ՏԻԳՐԱՆՈՒՀԻ ՄԵՍՐՈՊԵԱՆԻ

մահուան Բ. տարեդարձին առթիւ: Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

## ՇԻՐԻՄԻ ԱՅՑ

Ֆ. Կ. Խաչի Պաննէօ Քաշանի մասնաճիւղը կազմակերպած է այց մը իր վերթերան ընկերոջ Փարթամ Պասմաճեանի շիրիմին, այս Կիրակի ժամը 15ին: Ժամադրավայր գերեզմանատան դրան առջեւ (Ավրնիւ Բարնօ):

## ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆ

Մարսէյլի հայ գաղութը կը հրաւիրուի հանդիսաւոր ընդունելութեան որ տեղի պիտի ունենայ այսօր, Ուրբաթ (Հոկտ. 14) ժամը 21ին, Օթել Սփլանտիտի մէջ ի պատիւ Հ. Բ. Ը. Մ. նախագահ՝ ԱԼԷՔ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ: Գեղարուեստական բաժին եւ մեծարանք: Ոչ մէկ հանգանակութիւն:

Տախքերու մասնակցութիւն 5 Ն. Ֆ.:



## ԼՈՒՍԱՆԿԱՐՆԵՐ

Գրական գործ մը պատկերազարդելու համար, «Յառաջ»ի ընթերցողներէն կը խնդրուի մեզի ղրկել հետեւեալներուն լուսանկարները.— Ռուբէն Տէր-Մինասեան, Շանթ, Թորգոմ պատրիարք, Բարգէն Կաթողիկոս, Աւ. Իսահակեան, Հրանդ Ալեանաք: Լուսանկարները կը վերադարձուին ճիշդ պատրաստելէ ետք՝ մաքուր վիճակի մէջ:

Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

Կիրակի (16 Հոկտ.) ժամը 10·30ին, ձայնաւոր պատարագ՝

## ԳՐԻԳՈՐ ՊԵՏՐՈՍ ԺԵ. ԿԱՐԴԻՆԱԼ ԱՂԱՃԱՆԵԱՆԻ

Կաթողիկոս - Պատրիարք Տանն Կիլիկիոյ Եպիսկոպոսական ձեռնադրութեան քսանհինգերորդ տարեդարձին առթիւ:

Նկատել այս ազդը իբր հրաւէր:

## ՎԵՐԱՄՈՒՏ

Կապ. Խաչի Վիէնի դպրոցներու վերաբացումը այս Շաբաթ իրիկուն, ժամը 7·30ին, Րիւ Լաֆայէթի սովորական սրահը, թիւ 132:

Ուսուցիչ Պ. Կ. Տէրմոյեան:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ ԵՒ ՄԱՏԱՂ

Փարիզի Հաճնոյ Հայր. Միութեան նախաձեռնութեամբ Հաճնոյ հերոսամարտի 40րդ տարեդարձին առթիւ, ութ հազար զինուորներու յիշատակին հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Փարիզի Հայոց Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, 15 Րիւ Ժան Կուժօն, Փարիզ, այս Կիրակի առաւօտ: Կը հրաւիրուին հայրենակիցները եւ անոնց յիշատակը յարգողները: Յետ պատարագի մատաղ, Մշակոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ, Փարիզ (9):

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ ԻՍԻԻ ՄԷՋ

Հ. Յ. Դ. Իսիի «Զաւարեան» կոմիտէն կը տօնէ «Դաշնակցութեան 70ամեակը», 16 Հոկտեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Իսիի Խրիմեան դպրոցին մէջ, ուանդական կերուխումով:

Կը խօսի ընկ. ԺԻՐԱՅՐ ԴԱՏԱՒՈՐԵԱՆ,

## ՀԱՃԸՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻՆ ՏԱՐԵԴԱՐՁԸ

ՇԱՄ.— Հաճընի Հայր. Ընդհ. Միութիւնը «Արծուաբոյն»ի հերոսամարտին 40րդ տարեդարձը կը տօնէ մեծ շուքով, այս Կիրակի, սովորական սրահին մէջ: Տէսինի նոր ընծայ Տէր Վարագ քհնյ. Աւագեան հոգեհանգստեան հանդիսաւոր պատարագ պիտի մատուցանէ 8000 անթաղ նահատակներու յիշատակին, եւ պիտի քարոզէ:

Կը հրաւիրուին շրջանի բոլոր հայրենակիցները եւ նահատակներուն յիշատակը յարգողները:

## Ա. Զ. Դ.

Սէնթ Անթուանի Ս. Թադէոս Եկեղեց. Թաղ. Խորհուրդը ի գիտութիւն Թաղիս եւ շրջաններու հասարակութեան կը ծանուցանէ թէ հայերէնի դասաւանդութիւնները կանոնաւորապէս տեղի պիտի ունենան յառաջիկայ Նոյեմբեր մէկէն սկսեալ, ամէն Հինգշաբթի օր կէսօրէ վերջ ժամը 2-5: Կը խնդրուի ծնողքներէն կանխաւ արձանագրել տալ իրենց զաւակները Կիրակի օրերը խորհրդարանի մէջ:

## ՎԵՐԱՄՈՒՏ ԿՐԸՆՈՊԼԻ ԴՊՐՈՑԻՆ

Կապոյտ Խաչի Կրընոպլի դպրոցը վերաբացուած է: Դասաւանդութիւնները տեղի կ'ունենան Կիրակի առաւօտները ժամը 9էն սկսած եւ ձրի:

Ծնողքներէն կը խնդրուի արձանագրութիւններուն համար չուշանալ, որպէսզի դասընթացքները կանոնաւոր կերպով տեղի ունենան:

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան Ենթակոմիտէէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ ժամը 21ին իր նոր հաւաքատեղին:

Ներկայ կ'ըլլայ Շրջ. կոմիտէի ներկայացուցիչը: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. «Վարանդեան» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները, այս Ուրբաթ, ժամը 20·30ին, Ցոյներու սրահը:

Կարեւոր օրակարգ:

ՊԱՆԵԷՕ - ՔԱՇԱՆԻ Հ. Յ. Դ. «Արծիւ» Ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս Հինգշաբթի ժամը 21ին, ծանօթ հաւաքատեղին:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Ռոստոմ» խումբի ժողովը այս Շաբաթ իրիկուն, ժամը 21ին, ընկեր Մանուկի բնակարանը: Կարեւոր օրակարգ:

ՇԱՒԻԼ.— Հ. Յ. Դ. Արդութեան խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21·30ին, սովորական հաւաքատեղին:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Քրիստափոր» խումբի ժողովը այս Երեքշաբթի, ժամը 21ին, Մշակոյթի Տան սրահը: Կարեւոր օրակարգ:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՇԱՒԻԼ.— Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Երկուշաբթի օր, ժամը 4ին դպրոցին սրահը: Ներկայ կ'ըլլայ Կեդր. վարչութեան ներկայացուցիչը:

## ՎԵՐԱՄՈՒՏ ՇԱՄԻ ԴՊՐՈՑԻՆ

Հաճնոյ Հայր. Ընդհ. Միութեան հովանաւորեալ դպրոցը վերաբացուած է, Հինգշաբթի եւ Կիրակի առաւօտները ժամը 10 - 12, ուսուցչութեամբ մանկավարժ Պօղոս Այպրազեանի, ծնողքներէն կը խնդրուի անյապաղ ղրկել իրենց զաւակները:

Imprimerie Spéciale du journal « Haratch »

Տէր եւ Տիկին Արթօ Սանտալեան (Գահիրէ), Օր. Ալիս Գալըպճեան, Սօնա եւ Եանա Սանտալեան ցաւով կը ծանուցանեն իրենց մօր եւ մեծ մօր՝

## ԱՐԱՔՍԻ ԳԱԼԸՊՃԵԱՆԻ
(Ծնեալ Յովակիմեան)

կսկծալի մահը, որ տեղի ունեցաւ էքս լէ Պէն, 73 տարեկանին։

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այսօր Շաբաթ (Հոկտ. 15), ժամը 10·30–ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ։

Մասնաւոր մահազդ չստացողներէն, կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել։

Գ. Փանոս Բարսեղեան, Տէր եւ Տիկին Յովհաննէսեան եւ զաւակը, Տէր եւ Տիկ. Արամ Յովհաննէսեան, ինչպէս նաեւ Արզումանեան, Բարսեղեան եւ Յովհաննէսեան ընտանիքները ցաւով կը ծանուցանեն իրենց կնոջ, մօր, մեծ մօր, խնամիին եւ ազգականին՝

## ԱՆԱՀԻՏ ԲԱՐՍԵՂԵԱՆԻ
(Ծնեալ Արզումանեան)

կսկծալի մահը, որ տեղի ունեցաւ 48 տարեկանին, յետ կարճատեւ հիւանդութեան, Հոկտեմբեր 12ին։

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս Երկուշաբթի (Հոկտ. 17) ժամը 14–ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Սէնթ Ուէնի գերեզմանատունը։

Մասնաւոր մահազդ չստացողներէն, կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Ռ. Յ. Պէրպէրեան ընտանիքը կը ծանուցանէ թէ այս Կիրակի առաւօտ յետ Ս. պատարագի, Փարիզի Հայոց Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի,

**ՕՆՆԻԿ ՊԷՐՊԷՐԵԱՆԻ**
(Մահուան առաջին տարելիցին)
եւ **ՇԱՀԱՆ ՊԷՐՊԷՐԵԱՆԻ**
(Մահուան Դ. տարելիցին առթիւ)

իրենց յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապոյտ Խաչի Կեդր. վարչութիւնը իր կրթական ֆոնտին համար շնորհակալութեամբ ստացած է քսան Ն. Ֆ. Տիկին Աբաքսի Աշճեանէ իր եղբօր՝ Գ. Պիպերեանի մահուան տարելիցին առթիւ։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ ԵՒ ՄԱՏԱՂ

Փարիզի Հաճնոյ Հայր. Միութեան նախաձեռնութեամբ Հաճնոյ հերոսամարտի 40րդ տարեդարձին առթիւ, ութ հազար զինուորներու ննջեցելոց, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Փարիզի Հայոց Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, 15 Րիւ Ժան Կուժօն, Փարիզ, այս Կիրակի առաւօտ։ Կը հրաւիրուին հայրենակիցները եւ անոնց խնկելի յիշատակը յարգողները։ Յետ պատարագի մատաղ, Մշակոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ, Փարիզ (9)։

## ՏԱՐԵԿԱՆ ՓԱՌԱՏՕՆ

Ֆրանսական Բանակի Նախկին Հայ Ռազմիկներու Բարեկամական Միութեան
1914 – 1918 — 1939 – 1945

Ա. ՄԱՍ.— Այս Կիրակի առաւօտ, Փըլաթոյի Մայր եկեղեցիին մէջ, հոգեհանգստեան հանդիսաւոր Ս. պատարագ, մասնակցութեամբ Դպրաց Դասուն եւ Արմենիա երգչախումբի։

Երկու Համաշխարհային պատերազմներու եւ Ազատագրութեան զոհերուն համար։

ՊԻՏԻ ՏՕՆՈՒԻ ԱՐԱՐԱՅԻ ՅԱՂԹԱԿԱՆ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԻ Ն ԿԻԼԻԿԻՈՅ ԳՐԱՒՄԱՆ 42ՐԴ ՏԱՐԵԼԻՑԸ։

Ի ներկայութեան Ֆրանսայի Զինուորական եւ քաղաքային բարձրաստիճան անձնաւորութիւններու եւ Ֆրանսական Ռազմիկներու Ընդհ. Ընկերակցութեանց, իրենց դրօշակներով։

Պատարագէն վերջ Դրօշի պարզում, մասնակցութեամբ Զին. նուագախումբի։

Կարգապահութեան կը հսկեն Հայ Արենոյշները։

Կը խօսի **ՏԻՐԱՆ ԹԷՔԷԵԱՆ**

Սպայ Պատուոյ Լեգէոնի եւ Պատուական Նախագահ Ռազմիկներու Միութեան։

Բ. ՄԱՍ.— Կէս օրէ վերջ ժամը 13ին, ֆրանքօ-հայկական ճաշ Շաթօ տէ Ֆլէօր սրահին մէջ։

Նախագահութեամբ ԿԱՍԹՈՆ ՏԷՖԷՌԻ։

Ներկայ կ'ըլլան գնդ. Պերկաս, մարքիզուհի տը Ֆորեսթա, ծովակալ Պօվիէօ, եւայլն։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Տօնոյեան եւ զաւակները, շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, հեռագրով, նամակով իրենց ցաւակցութիւնը յայտնեցին

**ՍՄԲԱՏ ՏՕՆՈՅԵԱՆԻ**
(Մշեցի)

մահուան տխուր առթիւ։ (Թաղումը կատարուեցաւ Լա Սիոթա, Հոկտ. 1ին)։

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ ԻՍԻԻ ՄԷՋ

Հ. Յ. Դ. Իսիի «Զաւարեան» կոմիտէն կը տօնէ «Դաշնակցութեան 70ամեակը», 16 Հոկտեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Իսիի Խրիմեան դպրոցին մէջ, ատենական կերուխումով։

Կը խօսի ընկ. ԺԻՐԱՅՐ ԴԱՏԱՒՈՐԵԱՆ,

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ
10 bis, Rue Thouin, PARIS

Կիրակի (16 Հոկտ.) ժամը 10·30ին, ձայնաւոր պատարագ՝

## ԳՐԻԳՈՐ ՊԵՏՐՈՍ ԺԵ. ԿԱՐԴԻՆԱԼ ԱՂԱՃԱՆԵԱՆԻ

Կաթողիկոս – Պատրիարք Տանն Կիլիկիոյ Եպիսկոպոսական ձեռնադրութեան քսանհինգերորդ տարեդարձին առթիւ։

Նկատել այս ազդը իբր հրաւէր։

## ՇԻՐԻՄԻ ԱՅՑ

Ֆ. Կ. Խաչի Պանեէօ Քաշանի մասնաճիւղը կազմակերպած է այց մը իր վեթերան ընկերոջ Փարթամ Պասմաճեանի շիրիմին, այս Կիրակի ժամը 15ին։ Ժամադրավայր գերեզմանատան դրան առջեւ (Ավընիւ Քարնօ)։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՇԱՒԻԼ.— Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Երկուշաբթի օր, ժամը 4ին դպրոցին սրահը։ Ներկայ կ'ըլլայ Կեդր. վարչութեան ներկայացուցիչը։

## Հ. Յ. Դ.
### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան Ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ ժամը 21ին իր նոր հաւաքատեղին։

Ներկայ կ'ըլլայ Շրջ. կոմիտէի ներկայացուցիչը։ Կը խնդրուի ճշդապահ ըլլալ։

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. «Վարանդեան» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները, այս Ուրբաթ, ժամը 20·30ին, Յոյներու սրահը։

Կարեւոր օրակարգ։

ՊԱՆԵԷՕ – ՔԱՇԱՆԻ Հ. Յ. Դ. «Արծիւ» ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս Հինգշաբթի ժամը 21ին, ծանօթ հաւաքատեղին։

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Ռոստոմ» խումբի ժողովը այս Շաբաթ իրիկուն, ժամը 21ին, ընկեր Մանուկի բնակարանը։ Կարեւոր օրակարգ։

ՇԱՒԻԼ.—Հ. Յ. Դ. Արդութեան խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21·30ին, սովորական հաւաքատեղին։

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Քրիստափոր» խումբի ժողովը այս Երեքշաբթի, ժամը 21ին, Մշակոյթի Տան սրահը։ Կարեւոր օրակարգ։

Imprimerie Spéciale du journal « Haratch »











## ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ

ՅԻՇԱՏԱԿԻՆ ԵՐԵԿՈՅԹ

Նոյեմբեր 12, Շաբաթ իրիկուն

**Maison de la Chimie**

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Լիոնի Եկեղեց. Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուէրները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան .—*

*Տէր եւ Տիկին Մովսէս Փամուզճեանք իրենց մօր հանգուցեալ Զապէլ Պէրպէրեանի մահուան քառասունքին առթիւ 30 Ն. Ֆ.: Ոմն իր Թոռնիկին մկրտութեան առթիւ յիսուն Ն. Ֆ.: Տէր եւ Տիկին Գործակատարեան իրենց զաւկին Ժօրժի Ալժերիայէ վերադարձին առթիւ յիսուն Ն. Ֆ.:*

×

*Փարիզի եկեղեցւոյ գիւանը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները՝ իր Կրթ. ձեռնարկներուն համար:*

*Տիկին Վարդուհի Տէրամեան տասը Ն. Ֆ.: Պ. Օհանեան, փոքրիկն Էմլենի մկրտութեան առթիւ յիսուն Ն. Ֆ.: Պ. Տիրան Գարակիւլեան իր եղբ. եղբօր Արմենակ Գարակիւլեանի մահուան առթիւ 100 Ն. Ֆ.: Տիկին Արշալոյս Սարգիսեան իր սիրեցեալ ամուսնոյն յիշատակին 30 Ն. Ֆ.: Պ. Տալաքիւփէլեան իր զաւկին մկրտութեան առթիւ յիսուն Ն. Ֆ.: Պ. Յարութիւն Տամլամեան երեսուն Ն. Ֆ. իր մօր մահուան տարեդարձին առթիւ: Պ. Դաւիթ Յովհաննէսեան իր հօր եղբ. Գառնիկ Յովհաննէսեանի մահուան քառասունքին առթիւ հարիւր Ն. Ֆ.:*

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

*Լսարանի 14րդ տարեշրջանին բացումը կը կատարուի Թէյասեղանով մը, այս Զորեքշաբթի երեկոյ,* Քաֆէ Ռէժանի *վերնայարկը (Մէթրօ Քադէ):*

*Պիտի նախագահէ Պ. Յովհան Կարապետեան: Կը մասնակցին Լսարանի բարեկամ արուեստագէտներ:*

*Ուշադրութիւն նոր հասցէին:*

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Սերաստիոյ Մուրատ Ուսումնասիրաց Միութիւնը Հայաստանէն նոր բերուած հայախօս ժապաւէն մը կը ներկայացնէ Հոկտեմբեր 18ին: Մանրամասնութիւններ յաջորդիւ:*

*ԼՈՅՍ ՏԵՍԱՒ*

## ՀԱՅ - ԲՈՅԺ

*ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ*

խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Թիւ 221 – 222 (Մայիս–Յունիս), 48 էջ ԱՄԲՈՂՋՈՎԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆՈՒԻՐՈՒԱԾ

*ՄԱՄՈՒԼԻ ՏԱԿ Է*

*Թիւ 223 – 24 (Յուլիս – Օգոստոս), 48 էջ*

*ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ .— Տարիքի հարցը (ԽՄԲ.): Դեղերու վտանգը (ՏՈՔԹ. ՍԵՐՈԲԵԱՆ): Արագած լերան վրայ (ԲԱԼՏԵՐՄԱՆՑ): Հիւանդութիւններ որ կը մեռնին բայց... (ՏԹ. ԱՇՃԵԱՆ): Խնձոր կերէք (ՏՔԹ. ՄԱՆՈՒԿԵԱՆ): Նշիկները պէ՞տք է հանել (ՏՈՔԹ. ՍԱԼԲԻ): Սրտի հիւանդութեանց մասին (ՏՈՔԹ. ՍՈԼԱՔԵԱՆ): Արդի բժշկութիւնը քաղցկեղին դէմ (ՔԱՂՀԱՆ): Նոր դեղերու մասին (ՏՈՔԹ. ԳԱԼՈՒՍՏԵԱՆ): Արեւը բարիք ու չարիք (ՓՐՈՖ. ԼԱՄԻ): Պղտուղները անուշ եւ դեղ են (ՏՈՔԹ. ԱՍՔԱՆԱԶ): Արուեստական սերնդագործութիւն (ՏՈՔԹ. ՊԱՆԾԱԼԻ): Պահպանեցէք ակռաները (ՏՈՔԹ. ՄԱՐՏԻԿԵԱՆ): Տիեզերական ճառագայթները եւ բժշկութիւնը (ՏՈՔԹ. ԱՐՇԱԿ ՊՕՂՈՍԵԱՆ): Երեսին վրայ խալ ունի (Շ. ՆԱՐԴՈՒՆԻ): Ի՞նչ գիտէք հիւծախտին մասին (ՏՈՔԹ. ՌԱՄՕ): Դասեր Թունաւորման դէմ (ԽԱՉՈՒՀԻ):*

*Բաժանորդագրութեան պայմաններ .— Տարեկան 15 նոր ֆրանք (1500 ֆրանք): Արտասահման 20 նոր ֆրանք (2000 ֆ.) երկու տարեկանը մէկ կանխիկ վճարողին համար 37,5 նոր ֆրանք (3750 ֆր.):*

Ահաւասիկ թերթ մը, որ կոչուած է Տունին Բժիշկը: Մէկ բաժնեգինը տասը այցեգին կ'արժէ:

Ch. Aïvazian
Au journal HARATCH
32, Rue de Trévise, Paris (9e)

*ԿԱՐԵՒՈՐ ՓՆՏՌՏՈՒՔ*

*Նիւ Եորքաբնակ այժմ հանգուցեալ Աստուր Սարգիսեանի միակ ժառանգորդուհին եղող ամուսնութեան անունով Տիկին Ղարաօղլանեանէն, կամ Ղարաօղլան, կը խնդրուի ներկայանալ Փարիզի Հայոց Ս. եկեղեցւոյ դիւանատունը, շատ կարեւոր ժառանգական խնդրի մը համար: Կը խնդրուի զայն ճանչցող հայրենակիցներէն տեղեակ պահել դիւանատունը:*

Imprimerie Spéciale du journal « Haratch »

CONTRIBUTION A LA PREHISTOIRE DU MOYEN ORIENT A LA LUMIERE DE L'IDIOME SUMERO - ARMENIEN

Par Docteur C. G. GULBENKIAN

Les Sumériens, les Protohittites, les Haïs, les Arameens, les Inscriptions urartiennes, les Hurris, les Arméniens.

Editions G. P. Maisonneuve, Besson et Chantemerle Succ. 198 Bld. Saint Germain, Paris.

Prix : 12 N.F.

*Այս գրքին մէջ հեղինակը չորս հարիւրէ աւելի նոյնաձայն բառերու յիշատակութեամբ երեւան կը հանէ Սումմերներու եւ Հայերու ազգակցութիւնը, ինչպէս նաեւ գոյութիւնը սումմերահայ բարբառի մը, որ ոչ միայն մեծապէս սատարած է հայ լեզուի կազմութեան, այլ եւ Հայաչայի, Հաթթիի եւ Ուրարտուի բարբառներուն:*

*Նոյնպէս տեղական եւ յատուկ անուններու ստուգաբանութեամբ սումմերահայ բարբառով ի յայտ կը բերէ Հայերուն եւ Նախահիթթիթներուն ազգակցութիւնը, Հայ անուան ծագումը եւ նշանակութիւնը, արամական արշաւանք մը Հայաստան, գասականներուն անծանօթ, ինչպէս նաեւ հայ - հուրրիական դիցաբանութեան մը գոյութիւնը:*

*Գիրքը կը վերջանայ, ուրարտական արձանագրութիւններուն սումմեր - հայերէն բառարանով:*

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Քրիստափոր» խումբի ժողովը այս Երեքշաբթի, ժամը 21ին, Մշակոյթի Տան սրահը: Կարեւոր օրակարգ:*

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ՇԱՒԻԼ.— Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Երկուշաբթի օր, ժամը 4ին դպրոցին սրահը: Ներկայ կ'ըլլայ Կեդր. վարչութեան ներկայացուցիչը:*

*ԱՌՆՈՒՎԻԼ.— Վարագայ Ս. Խաչ եկեղեցւոյ Տիկնանց Օժանդակ Միութեան սարքած վիճակահանութեան թիւերէն անոնք որ յարդ չեն ստացած, կրնան ստորեւ նշանակուած թիւերուն տէրերը գալ եկեղեցի եւ ստանալ իրենց առարկաները:* 74 3 197 194 202 130 139 191 105 203 117 114 20 138 152 11 149 78 19 126 41 6 32 66 77 127 193 177 142 111 182 54 172 118 115 107 70 62 69 61:

*Դիմել եկեղեցի:*

*ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ*

*10 Նոյեմբեր Հինգշաբթի իրիկուն, Սալ Շոփէն Սարգիս Պօղոսեանի վեցերորդ պտոյտը հայ գրականութեան պարտէզին մէջ. «Յովհաննէս Երզնկացիէն Յովհաննէս Շիրազ»:*

մէն, որպէսզի փաստաբան մը յանձնա–րարեն իրեն։ Դժուար գործ ։

Լսուած են երեք վկաներ, տակաւին կարգի կը սպասեն չորս ուրիշներ։ Ժամը բաւական յառաջացած է ։ Նախագահը կ'որոշէ վաղուան յետաձգել դատը լսելու համար միւս վկաները ։

Եասը Ատայի դատավարութեան յատ–կանշական կողմերէն մին կը կազմէ թեր–թերուն համար լուսանկար հանելու պարագան ։ Նկատելով որ արգիլուած է լուսանկարել կղզին մէջ, բանակն է որ ստանձնած է այդ պարտականութիւնը ։ Կը լուսանկարէ եւ անմիջապէս իւրաքան–չիւր լուսանկարէն բազմացնելով կը ծա–խէ լրագրողներուն՝ հատը 25 ոսկի ։

Բանակի լուսանկարիչները գործի վրայ են ամէն վայրկեան ։ Մաս առ մաս կը հանեն լուսանկարները եւ մաս առ մաս ու ձեռքէ ձեռք կը խլուին լրագրողներու կողմէ ։ Այս տեսարանը կը շարունակուի մինչեւ դատավարութեան վերջը եւ ամե–նավերջին նկարներն ալ կը ծախուին շո–գենաւին մէջ՝ վերադարձին ։

×

Վերադարձը՝ ուրիշ պատմութիւն ։ Բո–լոր լրագրողները գործի են լծուած, ձե–ռագիր պատրաստելու եւ իրենց թերթին հասցնելու համար ։ Ամէն կողմէ կը լսուին գրամեքենաներու ձայները ։

Այսպէս առաւօտեան ժամը եօթին Տոլ–մապահչէէն ճամբայ ելլելէ ետք, ժամը 19ին դարձեալ Տոլմապահչէ ։

×

ՖՐԱՆՍԱՅԻ ծանօթ փաստաբան Մօրիս Կառսոն հաղորդագրութիւն մը հրապա–րակեց յայտնելով թէ Եասը Ատայի դա–տավարութիւնը համապատասխան չէ իրաւական օրէնքին ։ Պաշտպանութեան փաստաբանները լայնօրէն կ'ուզեն օգտա–գործել Կառսոնի տեսակէտը ։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Զ. Յակոբ Տէր – Յակոբ–եան,

Պ. Տիրք Տէր – Յակոբեան,

Տէր եւ Տիկին Մեսրոպ Տէր – Յակոբ–եան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատար–ուի իրենց ամուսնոյն, հօր եւ մեծ հօր՝

### ՅԱԿՈԲ ՏԷՐ-ՅԱԿՈԲԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ, այս Կի–րակի առաւօտ Փարիզի Ս. Յովհ. Մկր–տիչ եկեղեցւոյ մէջ ։

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները ։

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ ՊԱԼԱՔԵԱՆ Ս. Ի ՅԻՇԱՏԱԿԻՆ

Պոմոնի Թաղ. Խորհուրդը կը ծանուցա–նէ թէ՝ այս Կիրակի, Տօն Գիւտ Խաչի, հանդիսաւոր պատարագ եւ հոգեհանգիստ տեղի պիտի ունենայ Թաղիս Ս. Գր. Լ. եկեղեցւոյն մէջ, ի յիշատակ Հայ. Ֆր–րանսայի Թեմի շինար Առաջնորդ հան–գուցեալ ԳՐԻԳՈՐԻՍ ԵՊԻՍԿ. ՊԱԼԱՔ–ԵԱՆԻ ։ Իր մահուան 26րդ տա–րելիցին առթիւ (վախճանած է 1934 Հոկտեմբեր չորսին) ։ Կը հրա–ւիրուի Մարսէյլի եւ շրջանի հայ ժողո–վուրդը ներկայ ըլլալ այն արարողու–թեանց, յարգելու համար հանգուցեալ Սրբազանին յիշատակը ։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Պ. Անդրանիկ Յակոբեան, Այրի Տիկին Նուարդ Երամեան, Տէր եւ Տիկին Սառ–քիս Յարութիւնեան, Տէր եւ Տիկին Պաղ–տիկ Քըլըճեան, ինչպէս նաեւ Էմիրեան, Վարդանեան, Յակոբեան, Ժամկոչեան, Պօղոյեան, Կարապետեան եւ Ղարիպեան ընտանիքները կը ծանուցանեն թէ հոգե–հանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ Ալֆորվիլի Ս. Պօ–ղոս – Պետրոս եկեղեցիին մէջ իրենց կո–նոջ, աղջկան եւ ազգականին՝

### ԼԻՒՍԻ ՅԱԿՈԲԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ ։

Կը հրաւիրուի ողբացեալին յիշատակը յարգողները ։

×

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի խը–նամակալութիւնը կը ծանուցանէ թէ այս Կիրակի, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ, 15 Րիւ Ժան Կուժօն, ողբացեալ Տի–կին ՄՈՒՐԱՏ ՊՕՅԱՃԵԱՆԻ

մահուան Բ. տարելիցին առթիւ ։

Կը հրաւիրուին հանգուցեալին յիշա–տակը յարգողները ։

×

Այրի Տիկին Արշալոյս Գոչունեան, զաւակները եւ թոռները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կա–տարուի իրենց ամուսնոյն, հօր եւ մեծ հօր՝

### ՅԱԿՈԲ ԳՈՉՈՒՆԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ ։

Այս Կիրակի առաւօտ, Լիոնի Ս. Աստ–ուածածնայ եկեղեցւոյ մէջ ։

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները ։

### ՎԵՐԱԲԱՑՈՒՄ ՀԱՅԵՐԷՆԻ ԴԱՍԸՆԹԱՑՔԻՆ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղը ու–րախութեամբ կը ծանուցանէ թէ վերա–բացած է Հինգշաբթի օրուան իր հայերէ–նի դասընթացքը, որ երկար տարիներ տեղի կ'ունենար Սօտիէթէ Սավանթի մէջ, փորձառու ուսուցչուհիներով, եւ որ ընդհատուած էր յարմար սրահի մը չգո–յութեան պատճառով ։

Ներկայիս հայերէնի դասաւանդու–թիւնները տեղի կ'ունենան 215 Պուլվ. Սէն Ժերմէն, Փարիզ (7), մէթրօ Րիւ տիւ Պաք, շատ գեղեցիկ դասարանի մը մէջ, օժտուած գպրոցի յատուկ ամէն կարելիութիւններով եւ պարագով ։

Ուսուցչուհին է Տիկին Ա. Զիթունի, որ ամէն Հինգշաբթի կէսօրէ ետք ժամը 2էն մինչեւ 5 կը դասաւանդէ եւ նոյնպէս կը կատարէ նորեկ աշակերտներու ար–ձանագրութիւնները ։

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղը այս դիւրութիւնը յանձն առած է սիրայօ–ժար, հայ դպրոցէ զրկուած թաղամասի մը երեխաներուն հայեցի դաստիարակու–թիւն տալու մտահոգութեամբ ։

Ծարգելի ծնողքներուն կը մնայ գնա–հատել այս ձեռնարկը, առաջնորդելով այս հայերէնի դասընթացքին իրենց զա–ւակները, զանոնք օտարացումէ կամ ու–ծացումէ զերծ պահելու համար ։

Ֆ. Կ. ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂ

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ
ՅԻՇԱՏԱԿԻՆ ԵՐԵԿՈՅԹ

Նոյեմբեր 12, Շաբաթ իրիկուն

**Maison de la Chimie**

### ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70 ԱՄԵԱԿԸ ՊՈՐՏՈՅԻ ՄԷՋ

Հ. Յ. Դ. ՊՈՐՏՈՅԻ Մուրատ խումբը կը տօնէ Դաշնակցութեան 70 ամեակը, Հոկտեմբեր 30ին, Կիրակի ժամը 15ին, Մուլէն – Պլէօի սրահը, (Սրնօն) ։

Գեղարուեստական ճոխ բաժին ։

Մանրամասնութիւնները տեղւոյն վը–րայ ։

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Յ. Դաշնակցութեան 70ամեակը կը տօնուի Կրընոպլի մէջ, 30 Հոկտեմբեր, Րիւ Ժէլի սրահին մէջ ։

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆ. ԿԱՊՈՅՏ Խաչի Առնուվիլի ընդհ. ժողովը այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 15ին, ընկերուհի Հապէշեանի բնակարա–նը ։ Ներկայ կ'ըլլայ Կեդր. Վարչութեան ներկայացուցիչը ։ Բոլոր ընկերուհիներու ներկայութիւնը պարտաւորիչ է ։

ԹՈՔԱՏԻ Հայր. Միութեան ընդհ. ժո–ղովը այս Կիրակի (Հոկտեմբեր 23), ժա–մը 16ին, սովորական վայրը ։

## ՀՐԱԺԵՇՏԻ ԵՐԵԿՈՅԹ
Ի ՊԱՏԻՒ

### ՏԻԿԻՆ ԷԼԼԷՆ ԲԻՒԶԱՆԴԻ

(Ամերիկա մեկնումին առթիւ)

Նախաձեռնութեամբ Ֆ. Կապ. Խաչի Շրջ. վարչութեան եւ Փարիզի շրջանի բո–լոր մասնաճիւղերուն ։

Երեկոյթը տեղի կ'ունենայ այս Ուր–բաթ իրիկուն ժամը 20·30ին, Լիւթէսիա–յի սրահը ։

43, Boulevard Raspail

Կը հրաւիրուին ընկերուհիներն ու հա–մակիրները ։

### ՀԱՒԱՔՈՅԹ

Կ. Պոլսոյ Ազգ. Կեդր. Վարժարանի նախկին սաներու հաւաքոյթը տեղի պիտի ունենայ այս Շաբաթ օր ժամը 17–19, Գ. Աճէմեանին ճաշարանը, 12 Րիւ Քատէ ։

Կը խնդրուի բոլոր ընկերներէն ներկայ գտնուիլ ։

### Ս. ՅՈՎՀ. ՄԿՐՏԻՉ

Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ, Գիւտ Խաչի տօնին առթիւ, այս Կիրակի, պիտի մատուցուի քառաձայն Ս. պատարագ ։ Կը պատարագէ Հայրապե–տական պատուիրակ՝

ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ

Պիտի կատարուի հոգեհանգստեան պաշտօն Վռամշապուհ Արք. Քիպարեա–նի, Արտաւազդ Արք. Սիւրմէեանի, Կո–միտաս վրդ. ի յիշատակին ։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Զ. Յակոբ Տէր-Յակոբեան,

Պ. Տօրք Տէր-Յակոբեան,

Տէր եւ Տիկին Մեսրոպ Տէր-Յակոբեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց ամուսնոյն, հօր եւ մեծ հօր՝

### ՅԱԿՈԲ ՏԷՐ-ՅԱԿՈԲԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ, այս կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ:

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

×

Պ. Անդրանիկ Յակոբեան, Այրի Տիկին Նուարդ Երամեան, Տէր եւ Տիկին Առաքել Յարութիւնեան, Տէր եւ Տիկին Պաղտիկ Քիլըճեան, ինչպէս նաեւ Էմիրեան, Վարդանեան, Յակոբեան, Ժամկոչեան, Պօղոսեան, Կարապետեան եւ Ղարիպեան ընտանիքները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ Ալֆորվիլի Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցիին մէջ իրենց կողոջ, աղջկան եւ ազգականին՝

### ԼԻՍԻ ՅԱԿՈԲԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ:

Կը հրաւիրուի ողբացեալին յիշատակը յարգողները:

×

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի խնամակալութիւնը կը ծանուցանէ թէ այս Կիրակի, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ, 15 Րիւ Ժան Կուժօն, ողբացեալ Տիկին ՄՈՒՐԱՏ ՊՕՅԱՃԵԱՆԻ

մահուան Բ. տարելիցին առիթով:

Կը հրաւիրուին հանգուցեալին յիշատակը յարգողները:

×

Այրի Տիկին Արշալոյս Գոչունեան, զաւակները եւ թոռները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց ամուսնոյն, հօր եւ մեծ հօր՝

### ՅԱԿՈԲ ԳՈՉՈՒՆԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ:

Այս Կիրակի առաւօտ, Լիոնի Ս. Աստուածածնայ եկեղեցւոյ մէջ:

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

×

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ ՊԱԼԱՔԵԱՆ Ս. Ի ՅԻՇԱՏԱԿԻՆ

Պոմոնի Թաղ. Խորհուրդը կը ծանուցանէ թէ՝ այս Կիրակի, Տօն Գիւտ Խաչի, հանդիսաւոր պատարագ եւ հոգեհանգիստ տեղի պիտի ունենայ Թաղիս Ս. Գր. Լ. եկեղեցւոյն մէջ, ի յիշատակ Հար. Ֆրանսայի Թեմի չինար Առաջնորդ հանգուցեալ ԳՐԻԳՈՐԻՍ ԵՊԻՍԿ. ՊԱԼԱՔԵԱՆԻ: Իր մահուան 26րդ տարելիցին առթիւ (վախճանած է 1934 Հոկտեմբեր չորսին): Կը հրաւիրուի Մարսէյլի եւ շրջանի հայ ժողովուրդը ներկայ ըլլալ այն արարողութեանց, յարգելու համար հանգուցեալ Սրբազանին յիշատակը:



## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Զարթիկ Քէնտէրեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ Պուլվառ Օտտոյի (Մարսէյլ) Ս. Յակոբ եկեղեցին, իրենց ամուսնոյն եւ հօր՝

### ԶԱՔԱՐ ՔԷՆՏԷՐԵԱՆԻ

մահուան Բ. տարեդարձին առթիւ:

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

Այրի Տիկին Զարթիկ Քէնտէրեան իր ամուսնոյն մահուան Բ. տարելիցին առթիւ տասը Ն. Ֆ. կը նուիրէ Փարիզի Մըշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին:

(Ստանալ «Յառաջ»էն.:

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70 ԱՄԵԱԿԸ ՊՈՐՏՈՅԻ ՄԷՋ

Հ. Յ. Դ. ՊՈՐՏՈՅԻ Մուրատ խումբը կը տօնէ Դաշնակցութեան 70 ամեակը, Հոկտեմբեր 30ին, Կիրակի ժամը 15ին, Մուլէն-Պլէօի սրահը, (Սըմօն):

Գեղարուեստական ճոխ բաժին:

Մանրամասնութիւնները տեղւոյն վըրայ:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Յ. Դաշնակցութեան 70ամեակը կը տօնուի Կրընոպլի մէջ, 30 Հոկտեմբեր, Րիւ Ժէի սրահին մէջ:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Տիկին Վերժին Յովհաննէսեան, ծնեալ ԹՈՔԱԹԼԵԱՆ, բնիկ Կեսարացի, կը փնտռէ իր եղբայրը, որ կորսնցուցած է աքսորին, Համիտէի մէջ (Կեսարիա): Ներկայիս շուրջ 55 տարեկան պէտք է ըլլայ, կը կոչուէր երկու ոտքերէն, մօրը անունը՝ Ներկիզ, հօրը՝ Հայկազ, ունէր երեք քոյր եւ մէկ եղբայր:

Լուր ունեցողներէն տեղեկացնել Տիկին Վերժին Յովհաննէսեանի՝

7, Sentier des Bouviers
Issy-les-Moulineaux (Seine)
FRANCE

## ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ ԵՐԵԿՈՅԹ

Նոյեմբեր 12, Շաբաթ իրիկուն

**Maison de la Chimie**

### Ս. ՅՈՎՀ. ՄԿՐՏԻՉ

Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ, Գիւտ Խաչի տօնին առթիւ, այս Կիրակի, պիտի մատուցուի քառաձայն Ս. պատարագ: Կը պատարագէ Հայրապետական պատուիրակ՝

### ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ

Պիտի կատարուի հոգեհանգստեան պաշտօն վռամշապուհ Արք. Քիպարեանի, Արտաւազդ Արք. Սիւրմէեանի, Կոմիտաս վրդ. ի յիշատակին:

### ՀԱՒԱՔՈՅԹ

Կ. Պոլսոյ Ազգ. Կեդր. Վարժարանի նախկին սաներու հաւաքոյթը տեղի պիտի ունենայ այս Շաբաթ օր ժամը 17-19, Պ. Աճէմեանին ճաշարանը, 12 Րիւ Բատէ:

Կը խնդրուի բոլոր ընկերներէն ներկայ գտնուիլ:

## ՀՐԱԺԵՇՏԻ ԵՐԵԿՈՅԹ Ի ՊԱՏԻՒ

### ՏԻԿԻՆ ԷԼԼԷՆ ԲԻՒԶԱՆԴԻ

(Ամերիկա մեկնումին առթիւ)

Նախաձեռնութեամբ Ֆ. Կապ. Խաչի Շրջ. վարչութեան եւ Փարիզի շրջանի բոլոր մասնաճիւղերուն:

Երեկոյթը տեղի կ'ունենայ այս Ուրբաթ իրիկուն ժամը 20.30ին, Լիւթէսիայի սրահը:

43, Boulevard Raspail

Կը հրաւիրուին ընկերուհիներն ու համակիրները:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆ. ԿԱՊՈՅՏ Խաչի Առնուվիլի ընդհ. ժողովը այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 15ին, ընկերուհի Հայպէչեանի բնակարանը: Ներկայ կ'ըլլայ Կեդր. Վարչութեան ներկայացուցիչը: Բոլոր ընկերուհիներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ԹՈՔԱՏԻ Հայր. Միութեան ընդհ. ժողովը այս Կիրակի (Հոկտեմբեր 23), ժամը 16ին, սովորական վայրը:





Imprimerie Spéciale du journal « Haratch »

### Ա. Զ Դ.

●

Մխիթարեան Միաբանութիւնը պատիւն ունի ծանուցանելու թէ ընթացիկ Հոկտեմբեր 30ի կիրակին Վենետիկի Ս. Մարկոսի մայր տաճարին մէջ տեղի պիտի ունենայ Եպիսկոպոսական Ձեռնադրութիւնը Ուխտիս Ընդհանրական Աբբահօր՝

ԳԵՐՊ. ՍՐԱՊԻՈՆ Վ. ՈՒԼՈՒՀՕՃԵԱՆԻ

Ընտրեալ Տիտղոսաւոր Արք. Քերսոնի

Ձեռնադրիչն է Վսեմ. Կարդինալ Գրիգոր Պետրոս ԺԵ. Աղաճանեան Կաթողիկոս – Պատրիարք, իրեն աջակցութեամբ ունենալով Գերպ. Գրիգոր Արք. Հինտիէ եւ Գերպ. Կիւրեղ Եպս. Զոհրապեան։

Ձեռնադրութեան արարողութիւնը եւ Ս. Պատարագը պիտի սկսին առաւօտեան ժամը 9.30ին։

Հայ հաւատացեալներուն համար սահմանուած ըլլալով յատուկ տեղ, կը խնդրուի որ անոնք հաւաքուած ըլլան մինչեւ ժամը 9.30ին Ս. Մարկոսի տաճարին ճախակողմեան գաւիթը, որպէսզի խմբովին առաջնորդուին սահմանուած վայրը։

Պատարագի աւարտին, հետեւելով եկեղեցական եւ քաղաքական պաշտօնական անձերու թափօրին, հայ հաւատացեալները կրնան Աջն համբուրել եւ իրենց մաղթանքներն ընել Գերպ. Սրապիոն Արք.ի՝ Ս. Մարկոսի աւանդատան մէջ։

Ներկայ ծանուցումը կը ծառայէ իբրեւ հրաւիրագիր բոլոր անոնց որ պիտի փափաքին առաջիկայ գտնուիլ բացառիկ արարողութեան եւ պատուել նորընտիր Արքեպիսկոպոսը։

ԿԱՐԳԱԴՐԻՉ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ

Վենետիկ, Ս. Ղազար

### ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանին յաջորդ հաւաքոյթը այս Չորեքշաբթի ժամը 21ին՝ Քաֆէ Քալէի վերնայարկը։

Պիտի դասախօսէ Պ. Յովհան Կարապետեան։ Նիւթն է՝ Հանրութեան անծանօթ դրուագ մը Տիրան Չրաքեանի (Ինտրա) կեանքէն։

Մուտքը ազատ է։ Կը խնդրուի ճշդապահ ըլլալ։

### ԵՐԵՒԱՆ ՁԱՅՆԱՍՓԻՒՌԸ

Երեւանի Ռատիօ հաղորդման ժամերն ու ալիքները.— Ամէն կիրակի եւ չորեքշաբթի առաւօտները Փարիզի ժամով 9ին կարճ ալիք 19 եւ 25 մեթրի վրայ։

Imprimerie Spéciale du journal « Haratch »

### Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70 ԱՄԵԱԿԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ ՆԻՍԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Նիսի Հ. Յ. Դ.
ԳԷՈՐԳ ՉԱՎՈՒՇ ԽՈՒՄԲԻՆ
Հովանաւորութեամբ Մարսէյլի Հ.Յ.Դ. Շրջանային կոմիտէին
եւ մասնակցութեամբ Նոր Սերունդի Նիսի «Հայաստան» նուագախումբին։
Կիրակի 30 Հոկտեմբեր ժամը 15ին

HOTEL SCRIBEի

Շքեղ սրահին մէջ

20, Avenue Georges Clémenceau

Կը նախագահէ Ընկ. ՇԻՇԼԵԱՆ
Կը բանախօսէ Ընկ. ԱՐԹԻՆԵԱՆ
Կը մեներգէ՝ Մարսէյլէն Օր. Ժագլին Փափազեան։
Գեղարուեստական ճոխ բաժին։
Մուտքը ազատ է։

### ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Դաշնակահար Ալէքս Սիրանոսեանի նուագահանդէսը (մրցանակաւոր Ժընեւի երաժշտանոցէն) Կիրակի, 30 Հոկտեմբեր, ժամը ճիշդ 16ին։

SALLE MOLIÈREի ՄԷՋ

(Quai de Bondy)

Յայտագրին մեծ մասը նուիրուած է մեծ երաժշտագէտ Արամ Խաչատուրեանի գործերուն։

Կը մասնակցին.— Մարիզ Ռըկար (մրցանակաւոր Հռոմի երաժշտանոցի,), Արլէթ Մարգարեան (Լիոնի օփերայէն, պալէի բաժին), Տընիզ Աւետիսեան (դաշնակահարուհի)։

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ։

### Կ'ՈՒԶՈՒԻ

14 – 15 տարեկան պատանի մը, ներկայացուած ծնողքին կողմէ, իբրեւ աշկերտ դերձակութիւն սորվելու ամար։

Դիմել՝ Մ. ՊԸՐՊԸՐԵԱՆԻ,

32, Rue d'Hauteville, Paris 10e

### ՓՈԽԱՆ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏԻ

Պ. Շնորհք Միքայէլեան (Փուաթիէէն) կը նուիրէ տասը Ն. Ֆ. Հայ Կարմիր Խաչի Անտէր հիւանդներու ֆոնտին, փոխան հոգեհանգիստի Միքայէլեան եւ Ոսկան – եան ննջեցելոց յիշատակին։ Կը նուիրէ նոյնպէս տասը Ն. Ֆ. Հայ Կարմիր Խաչի Փարիզի դարմանատան Յակոբեան եւ Պօյաճեան ննջեցելոց յիշատակին։

×

Տէր եւ Տիկին Տալաքլըփէեան կը նուիրեն յիսուն Ն. Ֆ. Հայ Կարմիր Խաչի Անտէր հիւանդներու ֆոնտին, իրենց զաւկին մկրտութեան առթիւ։

### Գ. ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆԻ ՀԱՒԱՔԱԾՈՅԻ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ

Ամէն օր հետաձայնով եւ անձամբ մեզի կը հարցնեն Գ. Կիւլպէնկեան հաւաքածոյի ցուցադրութեան օրերը, ժամերը եւ տեւողութիւնը։ Թէեւ հիմնարկութիւնը ոչ մէկ հաղորդագրութիւն տուած է այդ մասին, բայց կրցանք ճշդել, գոհացում տալու համար մեր ընթերցողներուն, թէ ցուցահանդէսը բաց է մինչեւ Նոյեմբեր 7, ամէն օր մինչեւ ժամը 17, Շաբաթ եւ Կիրակի մինչեւ 17.30։

ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ Ֆէսանվիլիէի օ – գախոխութեան կայանին կը նուիրեն.— Պ. Պ. Վահէ Ֆրէնքեան 420 Ն. Ֆ., Պօղոս Ֆրէնկեան, Գէորգ Պաքըրճեան, Վահրամ Պարկիրճեան յիսունական Ն. Ֆ., Պերճ Զաքըրճեան երեսուն Ն. Ֆ., Անդրանիկ Մալաճեան քսան Ն. Ֆ., Հայկ Գարագաշեան քսան Ն. Ֆ., Անտրէ Պարկիրճեան, Հայկ Պահչէճեան, Եազըճեան, Կէօվճեան տասնական Ն. Ֆ.։

### ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ

ՅԻՇԱՏԱԿԻՆ ԵՐԵԿՈՅԹ

Նոյեմբեր 12, Շաբաթ իրիկուն

Maison de la Chimie

### ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70 ԱՄԵԱԿԸ ՊՈՐՏՈՅԻ ՄԷՋ

Հ. Յ. Դ. ՊՈՐՏՈՅԻ Մուրատ խումբը կը տօնէ Դաշնակցութեան 70 ամեակը, Հոկտեմբեր 30ին, Կիրակի ժամը 15ին, Մուլէն – Պլէօի սրահը, (Սընօն)։

Գեղարուեստական ճոխ բաժին։

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ։

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Վիէն.— Դաշնակցութեան 70ամեակը, կը տօնուի Նոյեմբեր վեցին։

Կիրակի կէսօրէ վերջ, Սէրքլր Կաթոլիքի սրահը։ Կը խօսի ընկեր Յ. ՊԱԳԻԿԵԱՆ

### ՅԱԿՈԲ ՏԷՐ-ՅԱԿՈԲԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Տէր եւ Տիկին Մկրտիչ Աւետիսեան, Յակոբ Տէր-Յակոբեանի մահուան քառասունքին առթիւ, 20 Ն. Ֆ. կը նուիրեն «Յառաջ»ի բարգաւաճման :

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Օր. Գալըպճեան իր մօրը մահուան տարելիցին առթիւ վաթսուն Ն. Ֆ. կը նուիրէ Մշակոյթի Տան Շաւարշ Միսաքեան սրահին :
(Ստանալ «Յառաջ»էն) :

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանին յաջորդ հաւաքոյթը այս Չորեքշաբթի ժամը 21ին՝ Քաֆէ Քառէի վերնայարկը :

Պիտի դասախօսէ Պ. Յովհան Կարապետեան: Նիւթն է՝ Հանրութեան անծանօթ դրուագ մը Տիրան Չրաքեանի (Ինտրա) կեանքէն :

Մուտքը ազատ է : Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :

### ՎԵՐԱԲԱՑՈՒՄ ՀԱՅԵՐԷՆԻ ԴԱՍԸՆԹԱՑՔԻՆ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղը ուրախութեամբ կը ծանուցանէ թէ վերաբացած է Հինգշաբթի օրուան իր հայերէնի դասընթացքը, որ երկար տարիներ տեղի կ'ունենար Սօտիէթէ Սավանթի մէջ, փորձառու ուսուցչուհիներով, եւ որ ընդհատուած էր յարմար սրահի մը չգոյութեան պատճառով:

Ներկայիս հայերէնի դասաւանդութիւնները տեղի կ'ունենան 215 Պուլվ. Սէն Ժերմէն, Փարիզ (7), մէթրօ Րիւ տիւ Պաք, շատ գեղեցիկ դասարանի մը մէջ, օժտուած դպրոցի յատուկ ամէն կարելիութիւններով եւ պարտէզով :

Ուսուցչուհին է Տիկին Ա. Զիթունի, որ ամէն Հինգշաբթի կէսօրէ ետք ժամը 2էն մինչեւ 5 կը դասաւանդէ եւ նոյնպէս կը կատարէ նորեկ աշակերտներու արձանագրութիւնները:

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղը այս գոհողութիւնը յանձն առած է սփիւռքահայ, հայ դպրոցէ զրկուած թաղամասի մը երեխաներուն, հայեցի դաստիարակութիւն տալու մտահոգութեամբ :

Յարգելի ծնողներուն կը մնայ գնահատել այս ձեռնարկը, առաջնորդելով այս հայերէնի դասընթացքին իրենց զաւակները, զանոնք օտարացումէ կամ ուծացումէ զերծ պահելու համար :

Ֆ. Կ. ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂ

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70 ԱՄԵԱԿԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ ՆԻՍԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Նիսի Հ. Յ. Դ. ԳԷՈՐԳ ՉԱՎՈՒՇ ԽՈՒՄԲԻՆ
Հովանաւորութեամբ Մարսէյլի Հ. Յ. Դ. Շրջանային կոմիտէին
եւ մասնակցութեամբ Նոր Սերունդի Նիսի «Հայաստան» նորակազմ խումբին :
Կիրակի 30 Հոկտեմբեր ժամը 15ին

HOTEL SCRIBE ի

Շքեղ սրահին մէջ

20, Avenue Georges Clémenceau

Կը նախագահէ Ընկ. ՇԻՇԼԵԱՆ
Կը բանախօսէ Ընկ. ԱՐԹԻՆԵԱՆ
Կը մեներգէ՝ Մարսէյլէն Օր. Ժագլին Փափազեան :

Գեղարուեստական ճոխ բաժին :

Մուտքը ազատ է :

×

### ՍԷՆ ՇԱՄՈՆԻ ՄԷՋ

Այս Շաբաթ իրիկուն, ժամը 8.30էն մինչեւ առաւօտեան ժամը 3, Պ. Ուզունեանի սրճարանը (Փլաս տը լ'Ապաթուար) :

Գեղարուեստական ճոխ բաժին, խմբերգ, երգ, արտասանութիւն, մեներգ եւ նուագ :

Ճոխ պիւֆէ ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է

×

### ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Հ. Յ. Դ. Եօթանասունամեակը կը տօնուի այս Կիրակի ժամը 15.30ին, Րիւ Ժէի սրահին մէջ:

Նախաձեռնութեամբ Կրընոպլի Եօթնեղբայրեան ենթակոմիտէին եւ մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդին:

Կը նախագահէ Ընկ. Մ. ՄԻՐԶԷ:

Խնամուած գեղարուեստական բաժին, տեղւոյս լաւագոյն ուժերուն կողմէ :

Խմբերգ, երգ, արտասանութիւն եւ խմբական տոհմիկ պարեր Կապոյտ Խաչի պարախումբին կողմէ :

## ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Դաշնակահար Ալէքս Սիրանոսեանի նուագահանդէսը (մրցանակաւոր Ժընեւի երաժշտանոցէն) Կիրակի, 30 Հոկտեմբեր, ժամը ճիշդ 16ին :

SALLE MOLIÈRE ի ՄԷՋ
(Quai de Bondy)

Յայտագրին մեծ մասը նուիրուած է մեծ երաժշտագէտ Արամ Խաչատուրեանի գործերուն :

Կը մասնակցին. — Մարիզ Ոսկար (մրցանակաւոր Հռոմի երաժշտանոցի,), Արլէթ Մարգարեան (Լիոնի օփերայէն, պալէի բաժին), Տընիզ Աւետիսեան (դաշնակահարուհի) :

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70 ԱՄԵԱԿԸ ՊՈՐՏՈՅԻ ՄԷՋ

Հ. Յ. Դ. ՊՈՐՏՈՅԻ Մուրատ խումբը կը տօնէ Դաշնակցութեան 70 ամեակը, Հոկտեմբեր 30ին, Կիրակի ժամը 15ին, Մուլէն-Պլէօի սրահը, (Սընօն) :

Գեղարուեստական ճոխ բաժին :

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ :

### ԳՐԱԿԱՆ ՀԱՄԵՐԳ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ
### 6ՐԴ ՊՏՈՅՏ ՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՊԱՐՏԷԶԻՆ ՄԷՋ

ՍԱՐԳԻՍ ՊՕՂՈՍԵԱՆ
ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵՐԶՆԿԱՑԻԷՆ
ՅՈՎՀԱՆՆԷՍ ՇԻՐԱԶ

Այս Կիրակի ժամը 21.15ին
ՍԱԼ ՄԱԶԸՆՕ
90, Րիւ տ'Օպաներ
Տոմսերը՝ 2.50 եւ 3.50 Ն. Ֆ. :

## ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ

ՅԻՇԱՏԱԿԻՆ ԵՐԵԿՈՅԹ

Նոյեմբեր 12, Շաբաթ իրիկուն

Maison de la Chimie

### Կ'ՈՒԶՈՒԻՆ

Տարատ կարողներ եւ ափփէսէօզ, գիշեր կէսօրէ վերջերը.

21, Rue Nationale, Marseille 1er

### Կ'ՈՒԶՈՒԻ

14-15 տարեկան պատանի մը, ներկայացուած ծնողքին կողմէ, իբրեւ աշկերտ դերձակութիւն սորվելու ամար :

Դիմել՝ Մ. ՊԷՐՊԷՐԵԱՆԻ,

32, Rue d'Hauteville, Paris 10e

## ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ԿԻՐԱԿԻ, ՀՈԿՏԵՄԲԵՐ 30ԻՆ

ԺԱՄԸ 16ԷՆ ԿԷՍ ԳԻՇԵՐ

**GEORGE V, 31 Ave. George V, Paris**

Եղանակին առաջին պարահանդէսը
Զանազան անակնկալներ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺՆԻՆ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ՝

**Mlle Marie-José Neuville** (Երգչուհի, կիթառով)
**Mlle Térésa — M. Pablito** (Սպանական պարեր)

եւ ՄԵՆԱՊԱՐԵՐ ՍՕՍԻ ՊԱՐԱԽՈՒՄԲԷՆ

ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ JEAN CANTEL

**Deux Orchestres** **Attractions** **Tombola**

Կը խնդրուի կանխաւ ապահովել սեղանները հեռաձայնելով Միութեան գրասենեակը : ՓՐՕվանս 77-73 ՄՈՒՏՔ 5 Ն. ՖՐԱՆՔ

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Տէր եւ Տիկին Պերճ Զաքըճեան հարիւր Ն. Ֆ. կը նուիրեն Հ. Մ. Ը. Մ.ի Փարիզի մասնաճիւղին, Տիգրան Ջիթունիի մահուան առթիւ: (Ստանալ Նուիրատուէն):

### ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ ՏԻԳՐԱՆ ՋԻԹՈՒՆԻԻ ՄԱՀՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Տէր եւ Տիկին Վրոյր Ջիթունի կը նուիրեն Կապոյտ Խաչի հայերէնի դասընթացքներուն հարիւր Ն. Ֆ., ինչպէս նաեւ Փարիզի Ազգասիրուհեաց հարիւր Ն. Ֆ.:

Տէր եւ Տիկին Գարլօ Սիրաքեան փոխան ծաղկեպսակի կը նուիրեն Փարիզի Ազգասիրուհեաց հարիւր Ն. Ֆ.:

(Ստանալ «Յառաջ»էն):

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Ս. Ջիթունի, Տէր եւ Տիկ. Վրոյր Ջիթունի եւ ընտանեկան բոլոր պարագաները, իրենց սրտագին շնորհակալութիւնը կը յայտնեն Կաթ. Պատուիրակ Սերովբէ Եպիսկ. Մանուկեանի, ինչպէս նաեւ բոլոր անոնց՝ որոնք անձամբ, ծաղկեպսակով կամ գրաւոր մասնակցելով իրենց սուգին, ցաւակցութիւն յայտնեցին, իրենց ամուսնոյն, հօր եւ ազգականին՝

ՏԻԳՐԱՆ ՋԻԹՈՒՆԻԻ

կսկծալի մահուան առթիւ:

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70 ԱՄԵԱԿԸ ՊՈՐՏՈՅԻ ՄԷՋ

Հ. Յ. Դ. ՊՈՐՏՈՅԻ Մուրատ խումբը կը տօնէ Դաշնակցութեան 70 ամեակը, Հոկտեմբեր 30ին, Կիրակի ժամը 15ին, Մուլէն - Պլէօի սրահը, (Սրնօն):

Գեղարուեստական ճոխ բաժին:

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ:

### ԺՈՂՈՎԻ ՀՐԱՒԷՐ

Սողոմոն Թէհլիրեանի յիշատակի երեկոյին կարգադիր յանձնախումբի անդամները ժողովի կը հրաւիրուին երկուշաբթի գիշեր, 31 Հոկտեմբեր, Քոռայլ սրճարանին մէջ, ժամը ճիշդ 20ին:

### ԱՑՑ

Հ. Յ. Դ. Նոր Սեբաստիոյ Իսիի խումբը այց մը կազմակերպած է իր ընկերոջ՝

ՊԵՏՐՈՍ ԵՍԱՅԵԱՆԻ

շիրիմին (ինկած Ալժերիոյ ճակատը), Նոյեմբեր մէկին, երեքշաբթի առաւօտ ժամը 11ին: Հաւաքուիլ Իսիի գերեզմանատունը:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ՄԱՐՍԷՅԼ.— Այրի Տիկին Սիրանոյշ Ծերեկեանց եւ զաւակները Պանդուխտ, Պերճ, Պօղոս եւ ընտանեկան պարագաները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ Պօմոնի Հայոց եկեղեցիին մէջ, իրենց ողբացեալ ամուսնոյն, հօր եւ ազգականին՝

ԳԵՂԱՄ ԾԵՐԵԿԵԱՆՑԻ

մահուան քառասունքին առթիւ:

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

×

Տէր եւ Տիկին Գէորգ Թումայեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Աղապապ Պարսամեան (Թօփալեան) եւ զաւակները, Տէր եւ Տիկին Գէորգ Տատուրեան եւ զաւակը կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին, իրենց հօր, մօր, մեծ հօր եւ մեծ մօր՝

ՅԱԿՈԲ ԵՒ ՎԱՌՎԱՌ ԹՈՒՄԱՅԵԱՆԻ

յիշատակին:

Կը հրաւիրուին ողբացեալներուն յիշատակը յարգողները:

## ԳՐԱԿԱՆ ՀԱՄԵՐԳ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ 6ՐԴ ՊՏՈՅՏ ՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՊԱՐՏԷԶԻՆ ՄԷՋ

ՍԱՐԳԻՍ ՊՕՂՈՍԵԱՆ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵՐԶՆԿԱՑԻԷՆ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՇԻՐԱԶ

Այս Կիրակի ժամը 21·15ին

ՍԱԼ ՄԱԶԸՆՕ

90, Րիւ տ'Օպանեը

Տոմսերը՝ 2·50 եւ 3·50 Ն. Ֆ.:

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70 ԱՄԵԱԿԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ ՆԻՍԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Նիսի Հ. Յ. Դ. ԳԷՈՐԳ ՉԱՎՈՒՇ ԽՈՒՄԲԻՆ

Հովանաւորութեամբ Մարսէյլի Հ.Յ. Դ. Շրջանային կոմիտէին

եւ մասնակցութեամբ Նոր Սեբաստիոյ Նիսի «Հայաստան» նորակազմ խումբին:

Կիրակի 30 Հոկտեմբեր ժամը 15ին

HOTEL SCRIBE ի

Շքեղ սրահին մէջ

20, Avenue Georges Clémenceau

Կը նախագահէ Ընկ. ՇԻՇԼԵԱՆ

Կը բանախօսէ Ընկ. ԱՐԹԻՆԵԱՆ

Կը մեներգէ՝ Մարսէյլէն Օր. Ժագլին Փափազեան:

Գեղարուեստական ճոխ բաժին:

Մուտքը ազատ է:

ՄԱՐՍԷՅԼԷՆ Նիս օթօքարը կը մեկնի այս Կիրակի առաւօտ ժամը 7ին: Հաւաքուիլ Աշարոնեան ակումբը:

×

### ՍԷՆ ՇԱՄՈՆԻ ՄԷՋ

Այս Շաբաթ իրիկուն, ժամը 8·30էն մինչեւ առաւօտեան ժամը 3, Պ. Ուզունեանի սրճարանը (Փլաս տը լ'Ապաթուար):

Գեղարուեստական ճոխ բաժին, խմբերգ, երգ, արտասանութիւն, մեներգ եւ նուագ:

Կը խօսի Ընկ. Ս. ԸՆՏՐԻԿԵԱՆ

Ճոխ պիւֆէ  ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է

×

### ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Հ. Յ. Դ. Եօթանասունամեակը կը տօնուի այս Կիրակի ժամը 15·30ին, Րիւ Ժէի սրահին մէջ:

Նախաձեռնութեամբ Կրընոպլի Եօթնեղբայրեան ենթակոմիտէին եւ մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սեբաստիոյ:

Կը խօսի Ընկ. Մ. ՄԻՐԶԷ:

Ընտրուած գեղարուեստական բաժին տեղւոյս լաւագոյն ուժերուն կողմէ:

Խմբերգ, երգ, արտասանութիւն եւ խմբական տոհմիկ պարեր Կապոյտ Խաչի պարախումբին կողմէ:

×

### ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Նոյեմբեր 12ին:

Կը խօսի Ընկ. ԱՌԼԷՆ ՓԱՓԱԶԵԱՆ:



Մեռելոցի առթիւ, յիշեցէք Պալաքեան Սրբազանի շիրիմը:

Նուէրները ղրկել Պօմոնի (Մարսէյլ) եկեղեցւոյ կամ Թոքատի Հայր. Միութեան.— Ե. Գրիգորեանի,

1, Rue B. Gand, VILLEMOMBLE (Setne)

## ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Դաշնակահար Ալէքս Սիրանոսեանի նուագահանդէսը (մրցանակաւոր Ժընեւի երաժշտանոցէն) կիրակի, 30 Հոկտեմբեր, ժամը ճիշդ 16ին:

SALLE MOLIÈRE ի ՄԷՋ

(Quai de Bondy)

Յայտագրին մեծ մասը նուիրուած է մեծ երաժշտագէտ Արամ Խաչատուրեանի գործերուն:

Կը մասնակցին.— Մարիզ Ռըկար (մրցանակաւոր Հռոմի երաժշտանոցի), Արլէթ Մարգարեան (Լիոնի օփերայէն, պալէի բաժին), Տընիզ Աւետիսեան (դաշնակահարուհի):

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:



## ՄԵԾԱՐԱՆՔ Ի ՊԱՏԻՒ ՏԻԿ. ԷԼԼԷՆ ԲԻՒԶԱՆԴԻ ԱՄԵՐԻԿԱ ՄԵԿՆՈՒՄԻՆ ԱՌԹԻՒ

Նախաձեռնութեամբ Ֆ. Կապ. Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղին, Հ. Յ. Դ. Սարգիս Մինասեան ենթակոմիտէի եւ Հ. Յ. Դ. Նոր Սեբաստիոյ խումբին:

Այս Շաբաթ, ժամը 21ին Քաղաքապետարանի սրահը, Րիւ Վոլթէռ, Ալֆորվիլ:

Սիրով կը հրաւիրուին կազմակերպութիւններն ու հասարակութիւնը:

Մուտքը ազատ է

Հաղորդ. միջոց.— Շարանթօն էգլէզ առնել թիւ 103 օթօպիւսը, ոչ թէ 203ը եւ իջնել Րիւ տը լ'Իւնիօն:

### ՏԱՐԵԿԱՆ ՈՒԽՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ

Այս Կիրակի տեղի պիտի ունենայ Մարսէյլի հայ գաղութին 28րդ ուխտագնացութիւնը դէպի Նօթրը Տամ տը Լա Կարտի սրբավայրը: Հայածէս ձայնաւոր պատարագը պիտի մատուցանէ Յովհ. Ծ. Վ. Ջուխաճեան (ժողովրդապետ Պուշ տիւ Րօն եւ Վառ նահանգներու հայ կաթողիկէներու): Երգեցողութիւնները պիտի կատարէ Ս. Գ. Լուսաւորիչ եկեղեցւոյ երկսեռ երգչախումբը: Ներկայ պիտի ըլլայ Գերապայծառ Մէրէնս, իբր ներկայացուցիչ Մարսէյլի արք.ին:

Կը խնդրուի հայ հաւատացեալներէն խուռներամ ներկայ գտնուիլ ժամը 9·30ին, սոյն արարողութեան:

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ռոստոմ խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, ընկեր Մանուկի բնակարանը:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբի ժողովը այս Չորեքշաբթի, Մշակոյթի Տան մէջ: Կարեւոր օրակարգ:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՀԱՄԱԽԱՐԲ. Հայր. Միութեան Կարտանի մասնաճիւղի ժողովը այս Կիրակի, կէսօրէ ետք ժամը ճիշդ 3ին, Կարտանի Հ. Բ. Ը. Միութեան սրահին մէջ:

Օրակարգի խիստ կարեւոր հարցեր տեղւոյն վրայ:

Մասնաճիւղին անդամներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ այս կարեւոր ժողովին:

ՍԵԲ. ՆԱՀԱՆԳ. Մուրատ Ուսումնասիրացը բոլոր իր անդամները եւ համակիրները ընդհ. ժողովի կը հրաւիրէ, այս Կիրակի ժամը 15·30ին, Խրիմեան դպրոցը: Օրակարգ՝ հաշուետուութիւն եւ նոր վարչութեան ընտրութիւն:

Կը խնդրուի անպայման ներկայ գտնուիլ: Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի նկատուի:

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

| | |
|---|---|
| Նախորդ գումար Ն·Ֆ· | 13·247·20 |
| Սերճանեան – Արապեան ընտանիք | 20·— |
| Զարթիկ Քէնտէրեան | 10·— |
| Օր· Գալըպճեան | 60·— |
| Տէր եւ Տիկին Ժիրայր եւ Զօհրապ Մուրատեան | 100·— |
| Մկրտիչ Գաղաճեան | 30·— |
| Ընդհ· գումար՝ | 13·467·20 |

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոն Եկեղ· Տիկնանց Միութիւնը շը – նորհակալութեամբ ստացաւ Տիկին Ա· Ճնկըրտեանի ձեռամբ, Տէր եւ Տիկին Գափուստըղեանէ 250 Ն· Ֆ·ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան: Թարարքէն այրի Տիկին Արշալոյս Գոչունեանէ քսան Ն· Ֆ·, Տէր եւ Տիկին Գալուստեանէ 5 Ն· Ֆ·:

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանական յաջորդ հաւաքոյթը այս Զորեքշաբթի ժամը 21ին՝ Քաֆէ Քատէի վերնայարկը :

Պիտի դասախօսէ Պ· Թ· Գառնիկ :

Նիւթն է՝ «Հայ ապատագրական պատմութեան յեղաշրջումը՝ 1400էն 1950»

## ԼՈՒՍԱՆԿԱՐՆԵՐ

Գրական գործ մը պատկերազարդելու համար, «Յառաջ»ի ընթերցողներէն կը խնդրուի մեզի ղրկել հետեւեալներուն լուսանկարները·—Շանթ, Բարգէն Կաթ·, Հրանդ Ալեանաք: Լուսանկարները կը վերադարձուին քիչէ պատրաստելէ ետք՝ մաքուր վիճակի մէջ:

Շ· ՆԱՐԴՈՒՆԻ

Imprimerie Spéciale du journal « Haratch »

### ԱՑՑ

Հ· Յ· Դ· Նոր Սերունդի Իսիի խումբը այց մը կազմակերպած է իր ընկերոջ՝

ՊԵՏՐՈՍ ԵՍԱՅԵԱՆԻ

շիրիմին (ինկած Ալժերիոյ ճակատը), Նոյեմբեր մէկին, երեքշաբթի առաւօտ ժամը 11ին: Հաւաքուիլ Իսիի գերեզմա – նատունը :

### ԺՈՂՈՎԻ ՀՐԱՒԷՐ

Սողոմոն Թէհլիրեանի յիշատակի երեկոյին կարգադիր յանձնախումբի ան – դամները ժողովի կը հրաւիրուին երկու – շաբթի գիշեր, 31 Հոկտեմբեր, Քօռայլ սրճարանին մէջ, ժամը ճիշդ 20ին:



Մեռելոցի առթիւ, յիշեցէք Պալաքեան Սրբազանի շիրիմը :

Նուէրները ղրկել Պօմոնի (Մարսէյլ) եկեղեցւոյ կամ Թոքատի Հայր· Միու – թեան·— Ե· Գրիգորեանի ,

1, Rue B. Gand, VILLEMOMBLE (Setne)

## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ 70 ԱՄԵԱԿԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ· Յ ·Դ· Լիոնի «Վարանդեան» կոմիտէին եւ մասնակ – ցութեամբ Հ· Յ ·Դ· «Նոր Սերունդ»ին :

Նոյեմբեր 5ի Շաբաթ երեկոյեան ժամը 8·30ին Րիւ Տիւնուաի սրահին մէջ :

Կը նախագահէ Ընկ· Մ· ՄԻՐԶԷ

Կը խօսի Ընկ· Ս· ՍԻՍԼԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին, կ՚արտասանեն Օրիորդներ Ս· Կարապետեան, Շ· Ղազարեան, Ս· Սիսլեան, Թ· Ճեր – մակեան, Մ· Իւրքիւ եւ Է· Մուրատեան:

Կ՚երգէ Օր· Ա· Կարապետեան եւ Փա – րիզէն յատկապէս հրաւիրուած Օր· Շաքէ Պէնկեան, ընկերակցութեամբ դաշնակա – հար Պ· Սիրանոսեանի :

Հայկական դեղջուկ պարեր կընոպլի Ֆ· Կ· Խաչի պարախումբին կողմէ, ղե – կավարութեամբ Տիկ· Ա· ՍԻՍԼԵԱՆԻ:

Մուտքը ազատ է :

×

ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Նոյեմբեր 12ին:

Կը խօսի Ընկ· ԱՌԼԷՆ ՓԱՓԱԶԵԱՆ :

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ·— Հ· Յ ·Դ· «Փոթորիկ» խումբի ժողովը այս Զորեքշաբթի, Մշակոյթի Տան մէջ: Կարեւոր օրակարգ :

### ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Լիոնի Ազգ· վարչութեան հրաւէրով, Կիրակի, Նոյեմբեր վեցին, կէսօրէ վերջ ժամը 15·30ին, Ազգ· Տան մեծ սրահին մէջ տեղի պիտի ունենայ ներկայացուցչական Բ· ժողով մը, որուն կրնան մասնակցիլ նաեւ Կրթ· եւ Մշակոյթ· կարեւոր հարցերով հետաքրքրուող բոլոր ծընողքները եւ սրտցաւ ազգայիններ եւս համաձայն 1960 Հոկտ· 9, Կիրակի գումարուած ներկայացուցչական առաջին ժողովի փափաքին: Ուստի ժողովը կը բացուի ժամը ճիշդ 15·30ին: Կը յանձնարարուի ճշդապահ ըլլալ :

ԴԻՒԱՆ ԱԶԳ· ՎԱՐՉՈՒԹԵԱՆ